# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 7•86



*Հանձնված է տպագրության 30.IV.1986 թ.: Ստորագրված է տպագրության 4.VII.1986 թ.: ՎՖ 06768: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69182: Պատվեր 927: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 30.IV. 1986 г. Подписана к печати 4.VII.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 06768. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69182. Заказ 927. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջը՝
ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ



ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# Երկու խարույկ

Ինչ զորավոր է լույսը գիշերում,
Եվ զորավոր է կրակը ցրտին,
Ազնիվ ընկեր է կրակը մարդուն
Եվ ջերմացնում է բոլորի հոգին:

Իմ աչքերի մեջ կրակն է պարում՝
Ուսերին լույսի քողեր թափանցիկ,
Ես շատ եմ տեսել բոցկլտուն խարույկ՝
Ձորերում մթին, լանջերում բարձրիկ:

Լույս խարույկներ եմ վառել գիշերով
Եվ հասկանում եմ կրակի լեզուն,
Ձորի խարույկը ջերմացնում է լոկ,
Սարի խարույկը՝ նաև փարոսում:

Կրակն ինձ տվեց երազանք ու սեր,
Որ բարձրիկ, բարձրիկ լեռներին հասնեմ,
Կրակոտ մարդիկ ձգտում են միշտ վեր,
Որ գիշերների մութը նոսրացնեն:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ







# Արևածագին ընդառաջ

Լուսանկարները՝ ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ

Քնիս մեջ զգացի, որ մեկը ինձ է կանչում: Աչքերս բացեցի. առջևս կանգնած էր ավագ ջոկատավար ընկեր Վրեժը: Հիշեցի. ճամբարի 1-ին հերթի վերջին օրերից մեկն էր՝ հուլիսի 26-ի գիշերը, պետք է արշավի դուրս գայինք՝ արևածագր դիտելու: Հուլիսի 25-ի երեկոյան արդեն բոլոր նախապատրաստական աշխատանքները ավարտվել էին: Մեր «Անահիտ» ճամբարը գտնվում է Եղեգիսի կիրճում, և արևածագը տեսնելու համար անհրաժեշտ էր բարձրանալ աջակողմյան սարի գագաթը: Պետք էր ճանապարհ ընկնել գիշերվա ժամը 5-ից ոչ ուշ: Վեր թռա և սկսեցի հագնվել: Մեր տնակի տղաներն էլ արթնացան: Շուտով մեր՝ 1-ին, և 2-րդ ջոկատի բոլոր պիոներները ոտքի վրա էին և շտապում էինք ճամբարի դեպի անտառ բացվող դուռը:

Ժամը մոտավորապես 4-ն էր, երբ մենք կանոնավոր շարքերով դուրս եկանք ճամբարից: Արահետը անցնում էր անտառի միջով: Առջևից գնում էր մեր ջոկատի Ալեքսանը, լապտերով լուսավորելով արահետը: Սկզբում բոլորս համակված էինք վախի զգացումով: Յուրաքանչյուր ծառ ու թուփ նմանեցնում էինք արջի, վայրի խոզի: Բայց շուտով բոլորիս տրամադրությունը բարձրացավ, և սկսեցինք կատակել, ուրախանալ, ծիծաղել:



Ծառերը նմանվեցին արդեն ծառերի, թըփերը՝ թփերի։

Տարվելով արևածագի մասին պատկերացումներով, մենք մոռացել էինք գիշերային անտառի գեղեցկությունները։ Այդ մասին մեզ հիշեցրեց ընկեր Վրեժը։ Նա խորհուրդ տվեց մի քանի րոպե լուռ կանգնել և ունկնդրել անտառի խորհըրդավոր ձայները։ Ընդհատ-ընդհատ լըսվում էին թռչունների կանչեր, մեղմ հովիկից ծառերի կատարները սվսվում էին և կարծես ինչ-ինչ գաղտնիքներ հայտնում միմյանց։

Ժամը վեցին քառորդ պակաս տեղ հասանք։ Տղաներով ցախ հավաքեցինք խարույկի համար, և շուտով բոլորս խըմբվել էինք բոցկլտացող խարույկի շուրջը։

Մինչ արևածագը բավականին ժամանակ կար, մենք երգում էինք, արտասանում, զվարճալի պատմություններ պատմում։ Ժամանակն այնքան աննկատ անցավ, որ չհասցրինք նկատել, թե երբ լուսացավ։ Եվ ահա Եղեգիսի կիրճը մեր առջև կանգնած է իր ողջ գեղեցկությամբ ու շքեղությամբ։ Մեր կանգնած տեղից մի քիչ ներքև անտառն էր։ Դիմացի սարի ստորոտին երևում էր 10—11-րդ դարերի կիսավերակ Հերմոնի վանքը։ Կիրճի խորքում հազիվհազ երևում էր մեր սիրելի «Անահիտը», իսկ երկու սարերի գագաթներին տիրաբար ծածանվում էին մեր ճամբարականներիս, ձեռքով ամրացված դրոշները…

Արևելքը շառագունեց։ Շրջակայքը ողողվեց արևի վաղորդյան ճառագայթներով։ Բնությունն կամաց-կամաց արթնանում էր։ Ուզում էիր ձեռքդ մեկնել և ափիդ մեջ առնել շիկացած գունդը և նայե՜լ նրան, նայե՜լ, նայե՜լ…

ԱՐՏԱԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Եղեգնաձոր, «Անահիտ» ճամբար, 1-ին ջոկատ

ԱՆԴՐԱՆԻԿ ԴԱՎԻԹՅԱՆ

# ՀԱՎԱՔԱԾՈՒԻՍ ՔԱՐԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Տարոնը հայրիկիս կրտսեր եղբայրն է, սակայն նա տարիքով ավելի մեծ է երևում, քան հայրս: Նա ապրում է Իջևանում:

Արդեն երկրորդ տարին է, ինչ ես ամառային արձակուրդս անց եմ կացնում այնտեղ: Լեռներից փչող քամին ամբողջ օրը խաղում է ծառերի ու ծաղիկների հետ և մոտակա երկաթգծի արանքում թափված խճաքարերին խառնված մազութի հոտը հասցնում ավան: Օրվա տարբեր ժամերին, նախազգուշացնող շչակներից հետո, լսվում են պայթյուններ: Հորեղբայրս հորատողների բրիգադի բրիգադավարն է. պայթեցումը ինքն անձամբ է կատարում: Վաղ առավոտյան դուրս է գալիս տնից և երեկոյան վերադառնում:

Առավոտները ավանի տղաների հետ բավականին տարածություն անցնելով ես հասնում էի երկաթգծին՝ ռելսերի միջև թափված ողորկ քարերից հավաքելու: Իմ քարերի հավաքածուն գերազանցում էր տղաների ունեցածին: Այդ քարերից հատկապես մեկը, որի շերտերի մեջ ոսկի հիշեցնող փայլ կար, տղաների նախանձն էր շարժում: Նրանք այդ քարի դիմաց պատրաստ էին տալու իրենց ամբողջ հավաքածուն, բայց ես չէի համաձայնում:

Մի անգամ հորեղբայրս սովորականից ուշ տուն եկավ: Ես նրան դեռ այդպես ուրախ չէի տեսել: Նրա հետ մի ռուս տղա էլ կար:

— Ինչո՞ւ ուշացար,— հարցրեց հորեղբորս կինը,— անհանգիստ էի: Հո բան չի՞ պատահել...

— Պատահել է,— կատակեց հորեղբայրս և աչքով արեց ռուս անծանոթին:— Նազիկ ջան, եկա՛ն... Հիմա գործը ավելի արագ կընթանա...

— Մի՞շտ,— հանկարծ ոգևորվեց Նազիկը,— չլինի՞ թե այդ տղան էլ նրանցից է:

— Նրանցից է: Նազիկ, սոված ենք, սեղան գցիր:

— Ովքե՞ր են եկել, հորեղբայր,— հետաքրքրվեցի ես:

— Կամավորների միութենական բրիգադն

է եկել տղաս: Սպասում էինք: Պիտի մասնակցեն թունելային աշխատանքներին:— Ծանոթացիր,— ասաց նա հյուրին,— կինս է՝ Նազիկը: Այս չորս սատանաները էլ իմ զավակներն են: Միշտն ասած, այս գանգրահերը՝ Սասունը, եղբորս տղան է: Արձակուրդը մեզ մոտ է անցկացնում:

Անծանոթի անունը Պավել էր: Նա բարձրահասակ էր և ամաչկոտ: Պավելը բեղեր ուներ, բայց նույրության պատճառով հազիվ էին նշմարվում: Ինձ այնպես թվաց, թե Պավելի ամաչկոտության պատճառը իր նոսր բեղերն են, որոնք հորեղբորս խոզանակի պես բեղերի համեմատությամբ ասես սմբուլ լինեին: Հորեղբայր Տարոնը Պավելին պատմում էր, որ ինքը թունելախորշի հենց առաջին աշխատանքներից սկսած մինչև օրս աշխատել է առանց եռանդ ու ուժ խնայելու և հիմա անհամբեր սպասում է ավարտին: Պավելը սիրով լսում էր հորեղբորս պատմածները ու, ինչ-որ հարցերի պատասխանները ընտանալով, զարմանում:

Ես նույնպես ցանկանում էի Պավելին ինչ-որ կերպ զարմացնել և, պահարանից հանելով իմ քարերը, փռեցի նրա առջև:

— Հավաքիր դրանք,— ասաց հորեղբայրս,— Պավելը դրանցից շատ է տեսել: Չես զարմացնի քո քարերով:

Բայց հակառակ հորեղբորս, Պավելը վերցրեց մի քանի քար և, շուռումուռ տալով, հարցրեց.

— Հայաստանի՞ քարեր են...

— Ո՛չ, սրանք երկաթգծի քարերն են: Ես եմ հավաքել: Իմ հավաքածուն բոլորից լավն է,— բացատրեցի ես:

Պավելը, քթին մոտեցրեց ափի մեջ պահած քարերը, հոտ քաշեց և, կապույտ աչքերը կկոցելով, երանությամբ ասաց.

— Հիշեցի մեր Պենզայի կիսակայարանը, այնտեղ սրանից շատ կա...

Ինձ չհաջողվեց քարերով զարմացնել Պավելին, բայց գոհ էի, որ կարողացա հաճելի հիշողություն արթնացնել նրա մեջ:

Հորեղբայրս, Պավելը և հորեղբորս կին Նազիկը տեղավորվեցին սեղանի շուրջը: Հորեղբայրս առաջարկեց խմել Պավելի գալըստյան կենացը: Հետո կենացները շատացան: Պավելը ժպտում էր ու ծխում: Նա դարձյալ նույն ամաչկոտն էր: Միայն այտերն էին շառագունել գինուց: Ջանում էր հարազատանալ մեզ: Կարծես բոլորովին այլ աշխարհից եկած լիներ, և Հայաստանում ամեն ինչ նրա համար անսովոր էր:

— Նազիկ, Պավելի համար անկողին բաց, մեր տանն է մնալու,— ասաց հորեղբայրս:— Ժամանած բրիգադի անդամներին տրեստը առայժմ չի կարող ապահովել հանրակացարանով: Որոշեցինք՝ ամեն մեկս ժամանակավորապես մեր տներում հյուրընկալել մեկական եկվորի:— Ապա ձեռքը դնելով Պավելի ուսին, քաջալերեց.

— Զգա քեզ ինչպես քո տանը, չամաչես, հասկացա՞ր...

Պավելը գլխով արեց:

— Պավելը մեր տանն է մնալու, մեր տանն է մնալու,— գոչեցինք մենք և ոգևորված հարձակվեցինք հորեղբորս վրա ու, վայր գլորելով նրան, սկսեցինք քաշքշել: Պավելը զարմացած նայում էր մեզ: Ասես կյանքում առաջին անգամ էր տեսնում, թե ինչպես են երեխաները կատակում այդպիսի մի ահռելի մարդու հետ:

Թունելախորշի տեղամասերից մեկի աշխատանքները մոտենում էին ավարտին: Երբ խոսք էր բացվում այդ մասին, Պավելն ասում էր.

— Դժվար կլինի, բայց մեկ է, հույս կըտանք և վե՛րջ...

— Ուրեմն շուտով գնացքները կանցնե՞ն թունելով,— ոգևորվում էինք մենք:

Պավելը հանգիստ պատասխանում էր.

— Գնացքները դեռ այնպիսի տեղերով կսլանան, որ ձեր մտքով էլ չի անցնում...

Մենք սիրեցինք Պավելին: Նա մեր ընտանիքի անդամն էր դարձել: Հորեղբայրս ու նա այնպես էին մտերմացել, ասես շատ վաղուց էին ճանաչում միմյանց:

Շուտով տրեստը հանրակացարան հատկացրեց եկվորներին: Պավելն էլ տեղափոխվեց այնտեղ, բայց երեկոները հաճախ մեզ հետ էր անցկացնում: Նրա այցը ուրախացնում էր բոլորիս:

Մի օր էլ աշխատանքից հետո ուղիղ մեր տուն եկավ և ժպտալով մոտեցավ ինձ՝ բռունցքը մեջ ինչ-որ բան սեղմած:

— Լսեցի, որ վաղը տուն ես մեկնում: Եկել եմ հրաժեշտ տալու:

Ափսոսանքով գլխով արեցի:

— Կարո՞ղ ես գուշակել՝ ի՞նչ կա բռիս մեջ...

Նայեցի աշխատանքից կոշտացած նրա ձեռքին, արևահար դեմքին, կապույտ աչքերին, բայց չկարողացա կռահել:

Պավելը բացեց բռունցքը: Եղածը կանաչ ու թափանցիկ մի քար էր:

— Հրաշալի ագաթ է,— ասաց,— այսօր եմ գտել: Երբ թրջում ես՝ զմրուխտի պես փայլում է: Վերցրու, ինձանից քեզ հիշատակ: Հուսով եմ՝ էլի կհանդիպենք...

Այդ քարը դարձավ իմ հավաքածուի զարդը:

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Արևը

Առավոտ վաղ արևը
Բարևում է բոլորին,
Բարևում է հողին, ջրին,
Ժայռին, ձորին ու քարին:

Բարևում է հորթին, գառան,
Սագին, հավին ու շանը,
Մարդուն, վագրին ու եղնիկին,
Նույնիսկ՝ գորտին, մկանը:

Պատուհանից ներս է մտնում,
Քնած Արևին նայում,
Խուտուտ տալիս և արթնացնում,
Ջերմ ժպիտով բարևում:

Եվ արևը բարևի հետ
Ջերմացնում է բոլորին,
Եվ հող ու ջուր, միջատ ու մարդ
Սիրում են վառ արևին:

## Խաժակն ու բաժակը

Քեռուս որդին՝ Խաժակը,
Կոտրեց տատիս բաժակը,
Լաց էր լինում Խաժակը՝
Գեղեցիկ էր բաժակը:

Հավաքեցի ես իսկույն
Փշրանքները բաժակի:
Եվ սրբեցի զուր թափվող
Արցունքները Խաժակի:

Տատս արագ ներս վազեց
Եվ Խաժակին համբուրեց,
Հետո շուռ եկավ ու ինձ
Ուզածիդ պես ապտակեց:

Տատիս ես չեմ նախատում՝
Տեսավ հանցանքի վայրում,
Փշրանքները իմ ձեռքում՝
Արցունքներս էի մաքրում:

ԲԵՆԻԱՄԻՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևան, Միք. Նալբանդյանի
անվան № 88 դպրոց, 8-րդ դաս



ՆԱՆՈՅԱՆ ՀՈՎՀԱՆՆԵՍ, 9 տ., Երևան





ԳԱԳԻԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, 14 տ.
Վրաց. ՍՍՀ, Ախալքալաքի շրջ. գ. Գոման

ՓԵՐԻՎԱՆՅԱՆ ԱՍԱՏՈՒՐ, 12 տ., Երևան

«ԻՄ ԸՆԿԵՐՈՒՀԻՆ»
ՄԽՈՅԱՆ ԼԻԼԻԹ, 10 տ., Երևան







ՎԱՀԱԳՆ ՄՈՒՂՆԵՑՅԱՆ

# ԱՆՑԱԾ-ԳՆԱՑԱԾ ՕՐԵՐ

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Համոյի արտը մի եզրով կախված էր Տանձուտի վրա։ Ամեն գարնան Մայմեխի ձնհալից Տանձուտը վարարում էր, վշշում ու թշշում, իր հորձանքի հետ արմատախիլ ծառեր էր բերում, քարեր էր բերում, պղտորվում-սևանում էր, ճանկռոտում, պոճոկում էր ափերը, և այդպես ամեն գարնան հետ պակասում էր Համոյի արտը։

Ամռանը Համոն ճիպոտը ձեռքից չէր գցում, թե բան է՝ եզները լծած գնում էր Թագավորանիստից խոտ բերելու, մեզ՝ թաղի երեխաներիս, խաբում, հետո տանում էր, որ իր բացակայությունից օգտվելով՝ չմտնենք արտը ոտնատակ անենք։ Լոթին ու Գուհարը՝ աչքերում անհասկանալի թախիծ, աջ ու ձախ ճոճվելով քաշում էին երկար ու անճոռնի գերանակապ սայլը։ Համոն ճղճղան ձայնով լուտանք էր թափում խեղճ Գուհարի գլխին, որի միակ մեղքն այն էր, որ Լոթիից թույլ էր ծնվել աշխարհում, և Լոթին մի քիչ էլ նրա համար էր ուսերին զոռ տալիս։

— Հո՛, Գուհար, մեջքդ կոտրի, հա՛,— ճիպոտի շրխկոցի հետ տաքանում էր Համոն,— Յո՛, Գուհար, ես քո եզն աողի։— Ճիպոտը բարձրանում էր և հուշիկ իջնում գոմեշի չափ ուժեղ Լոթու մեջքին՝ շոյելով, փաղաքշելով,ու մեղմանում, քնքշանում էր Համոն։— Քաշի՛, Լոթի ջան, քո ումուդին եմ, հա՛, քաշի, քե մատաղ, Լոթի ջան։

Համոյի էշը՝ ճեփ-ճերմակ, մենք բոլորս այդ էշի գետնով տվածներն էինք, սիրուն գլուխը բարձր պահած՝ գալիս էր սայլի կողքով։ Ոչ մեկս չէինք տեսել, որ Համոն հեծնի իր էշը կամ մի խուրձ խոտ շալակը տա։ Թե ինչու էր դրան այդքան երես տվել, այդպես էլ չիմացանք։

Հասնում էինք Թագավորանիստ, Համոն եզները արձակում էր, չգիտես ինչու

խոտով մաքրում էր լույսի պես պսպղուն գերանդին ու սկսում հնձել՝ փին-զորընդեղ շարժումներով: Տղերքը հնձած խոտը հավաքում, կիտուկ էին անում, իսկ ես ծառեծառ, թփեթուփ ընկած՝ ճիպոտ էի կտրում, տանում տուն: Մայրս բարկանում էր, բայց հայրս ասում էր՝ լավ է, հետո ճիպոտը սարի կդառնա, հետո՝ գերան: Ու ես շատ ուշ հասկացա, որ եղբայրս ինձ միշտ իմ կտրած ճիպոտներով էր ծեծում:

Մի օր Համոն չերևաց: Սիմոնից իմացանք, որ ջրաղաց է գնացել: Մենք զբաղմունք չունեինք: Տանձուտը շունչը փչելով, տեղ-տեղ կորչելով ու էլի երևալով, թավալվում էր՝ իր ներսում ցցված քարերից խուսափելով: Մեր թաղի բոլոր գնդակները անզգուշաբար գլորվել էին արտն ու զոհ գնացել Համոյի մանգաղին: Ու հենց իմացանք Համոն չկա, սատանա մտավ մեջներս՝ որոշեցինք պահմտոցի խաղալ նրա արտում:

— Էն խորքերումն էլ տափ կացեք, ադա՛, էն խորքերումն էլ,— իր թզաչափ արտի եզրից խրախուսում էր Սիմոնը՝ աչքերին չհավատալով, զույգ ձեռքի ափերով իր բազմաչարչար գլուխը գրկած. ասես երջանկությունից պիտի ուռչեր, ուռչեր գլուխը, գլորվեր ուսերից...

Սիմոնի խրախուսանքներից թև էինք առել՝ վազում էինք ու վազում, պառկում էինք խշխշան հասկերի մեջ, թավալ տալիս, այնպես որ երեկոյան կանգուն հասկ չմնաց. Համոյի արտը դարձավ հնձածի պես՝ տափարակ:

— Աղա, ա շան թուլեք, եկա՛վ, եկա՛վ...

Սիմոնի ձայնը ուշ հասավ մեզ. Համոն իր էշի հետ կանգնած էր արտի եզրին: Ձեռքին ճիպոտ չկար, մեջքին գոտի չկար, գոտին խրած մանգաղ չկար: Նայում ու աչքերին չէր հավատում, էշի գլուխը թևատակին սեղմած՝ լալիս էր ու աչքերին չէր հավատում: Մենք ծլկել ու հավաքվել էինք Սիմոնի շուրջը, Սիմոնի կողքին՝ արտեզրի քարերին նստոտել ու զարմանքը կտրած նայում էինք Ասլան Համոյին, զարմանում էինք, որ տեղից չի շարժվում, ձեռքը ճիպոտ չի առնում, կոտրում մեջքերիս: Սիմոնը կախել էր գլուխը՝ ձախ ձեռնափը մոռացած լիալուսնաձև գլխին: Գլուխը կախել էր Սիմոնն ու ոնց որ թե շիվարել էր:

Երեկոն այնպես եկավ, ինչպես աշնանային տաք օրվա բոլոր երեկոները: Իր թզաչափ շողշողուն արտեզրին նստած էր Սիմոնը՝ գլուխը ափերի մեջ: Համոն կանգնած էր նույն դիրքով՝ էշի գլուխը թևատակին՝ կուացած, փոքրացած...

Համոն արտը չհնձեց ու մինչև գարուն չերևաց: Իսկ գարնանը մի առավոտ, երբ երևաց, էլ արտ չուներ. Տանձուտը վարարել, միացրել էր զույգ հունը, Սիմոնի արտը տակով էր արել, քշել-տարել: Նախկին արտի եզրին կանգնած, որ հիմա գետեզերք էր, Համոն աչքերը կկոցած, աչքերում վճռական խորամանկ փայլ՝ տնտղում էր Տանձուտի հակադիր ափը: Նայեց Սիմոնին՝ բան չասաց: Սիմոնը մտածում էր, թե վերջապես ինքն ու Համոն դարձան բախտակից. Համոն այլևս իրեն վերևից չի նայի, չի արհամարհի: Իրենցից ոչ մեկը արտ չունի: Հիմա ադեն ի՞նչ կարևոր է, թե մի օր առաջ իր արտը մի քանի անգամ կմտներ Համոյի արտն ու դուրս կգար:

— Է՜խ, է՜խ,— Սիմոնը խոր հառաչեց, գարնանային պղտոր արևի նկատմամբ անտարբեր՝ գլուխը թեքեց դեպի արևելք, որտեղ Համոն էր,— վիզներս ծռո մնաց, Համո ջան...

Համոն ժպտալով նայում էր, հանելուկային նայում էր, ոչինչ չասելով նայում էր: Իսկ երբ Սիմոնը տխրությունը կատարյալ դարձնելու համար գլուխը դրեց Համոյի ուսին, Համոն՝ էլի ժպտալով, էլի հանելուկային նայեց, ասաց.

— Ի՞նչ մեծ բան ես կորցրել որ, մի ոտնաչափ արտ էր:

Սիմոնը նեղացավ. գլուխը հեռացրեց Համոյից, գլխի հետ ինքն էլ հեռացավ, ու դառնություն կար, կոփվ կար խոսքի մեջ.

— Համարյա թե քու իշի թայ մարդ ես, Համո. արտս պուճուր էր, բայց ցավս մեծն ա:

— Կարգին տղամարդը,— Համոն չէր նեղացել ու էլի Սիմոնին էր նայում ժպտալով,— նամուսով տղամարդը իր ցավի ճարը կգտնի...

Երեք օրում Համոն քարուքրից մաքրեց Տանձուտի նախկին հունը, վար արեց: Տափարակ սևահող էր. Գութանը չէր խեղճանում: Համոն ցանկապատեց արտը:

Սիմոնն ուշացած հասկացավ Համոյի խոսքերի իմաստը: Երբ հասկացավ, Համոն արդեն բարդու շիվեր էր տնկում արտի եզրերին: Նա մոտ կանչեց Սիմոնին,

գլխահակ Սիմոնին նստեցրեց քարագլխին և, ինչպես հայրը որդուն կխրատեր, մատը թափ տալով ասաց.

— Որ արտիս վրա անեծք չըլի, քու նախկին արտի չափ հող եմ տալիս. գընա, հացի տեր դարձիր: Բայց տես, հա՛, էլ հարևանիդ ունեցածին ծուռ աչքով մըտիկ չանես: Թե տղամարդ ես, էդ մի թիզ հողը իմ արտի չափ դարձրու: Էս երեխեքին էլ,— մատնացույց արեց մեզ, որ գետից ջուր էինք բերում, ջրում դալար շիվերը,— ծուռ ճամփա ցույց չտաս: Դե որոճացել. թե Համոյի ուժի ու զորության գաղտնիքը նրա ավանակի մեջ է, ու այդ հայտնագործությամբ ոգևորված՝ մի քոսոտ էշ էր ճարել:

Համոն հնձում էր իր լավաշ արտը: Սիմոնին ոչ մի կերպ չէր հաջողվում տեղահանել Տանձուտի կենտրոնում լռված իր քոսոտ էշը: Մենք խումբ-խումբ իջնում էինք ժայռն ի վար, գնում էինք Համոյին օգնելու:

Գերանակապ անճոռնի սայլը գեղեցկացել, շողշողում էր Համոյի աշնան



գնա, գլխիդ զոռ տուր, Սիմոն, որ գլուխդ էլ թևերիդ զոռ անի:

Սիմոնը ոտքի կանգնեց՝ աչքերում արցունք, խղճի արցունք, ամոթի արցունք:

Աշուն եկավ. մենք մի տարով մեծացել էինք և արդեն շատ բան էինք հասկանում: Համոն հնձում էր արտը՝ ոսկեծամ, ոսկեհատիկ: Սիմոնին ոչ մի կերպ չհաջողվեց գլխին զոռ տալ. Համոյի տված նույն մի թիզ արտն էր՝ Համոյի լավաշ արտին կպած մի պատառ հաց: Նրա ահռելի գլուխը ընդամենը մի միտք էր ոսկե հունձի ծանրության տակ: Սայլի վրա բարձր դեզ էր, մենք բազմել էինք այդ բարձունքին, իսկ Համոն գնում էր եզների կողքով, խրախուսական բացականչություններով Գուհարին ուժ էր տալիս: Դեզի գլխից պարզորոշ երևում էր Քարատակը. գետակի մեջտեղում Սիմոնը գայլ կտրած հարձակվում էր իր համառ էշի վրա, գոռում ու հայհոյում էր, բայց ոչ մի կերպ չէր կարողանում տեղից շարժել: Իսկ Սիմոնի արտը՝ մանգաղի կարոտ, հառաչում էր գլխիկոր, գլխիկոր:

## ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Էշը անցավ փողոցով՝
Խոտ էր տանում քթոցով,
Ուլիկն ուզեց, մկկաց՝
Տվեց մի ծեղ պստլիկ,
Գառնուկն ուզեց, տնքտնքաց՝
Տվեց խոտի մի շյուղիկ,
Հորթուկն ուզեց, թնգթնգաց՝
Տվեց խոտի մի շյուղիկ,
Կովը ուզեց, բռբռաց՝
Տվեց կովին մի խրձիկ:
Այսպես մնաց մի շյուղիկ,
Կենտ մի շյուղիկ քթոցում:
Մեկ էլ տեսավ մի շունիկ,
Կենտ մի շունիկ փողոցում:
Էշը տվեց շյուղիկը,
Զվերցրեց շունիկը,
Էշը՝ գոռաց՝ վերցրու,
Շունիկը թե՝ չեմ ուզում...
Այսպես ծագեց մի մեծ վեճ
Ու կռվեցին շուն ու էշ,
Վերջն ի՞նչ եղավ՝ հայտնի չէ,
Միայն գիտեմ, որ էշը
Ետ էր դառնում փողոցով
Դափ ու դատարկ քթոցով...



Բադիկը լիճ էր թռչում՝
Իր երամին հասնելու,
Բայց հոգնեցին թևերը,
Իջավ լճից քիչ հեռու:
Նրա սրտիկն զգում էր՝
Հիմա որսորդը կգա
Ու նրա հետ էլ գամփռ
Իր գելխեղդ շունը հսկա...
«Օյ, նրանք որ գան լճափ,
Ի՞նչ կլինի օրը մեր,
Պետք է շտապ, շատ շտապ
Ինչ-որ մի բան ձեռնարկել»:—
Բադիկն այսպես մտածեց,
Գտավ հնարը միակ,
Առավ կտուց-գրիչը
Ու ձյան վրա ճեփ-ճերմակ
Գրեց. «Որսորդ ջան, որսորդ,
Մի մեծ երամ բադերի
Թռավ գնաց սարի կողմ,
Իզուր լճափ մի արի»:

## ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Զանգի մեջ ասես
Ապրում է թռչուն,
Երգում է այնպես
Մաքուր ու հնչուն:

Զնգում է զվարթ՝
Ասես երկնքով
Երամն է գալիս
Գարնան երգերով:

Զանգը կանչում է
Մի ուրիշ զանգի,
Դա շատ նման է
Լուրթ երազանքի:

Ղողանջներն ասես
Փետուր են թեթև՝
Գնում-անցնում են
Սարերի ետև:



Աղվեսն ասաց,—
Ոչինչ չասաց,
Բայց առյուծը
Նրան ասաց.
— Ի՞նչ ես քթիդ
Տակ մրթմրթում,
Հիմա կգամ՝
Վերջդ կտամ...

Առյուծն ասաց,
Ոչինչ չասաց,
Բայց աղվեսը
Նրան ասաց.
— Պահ, էս ինչ լավ
Բան ասացիր,
Իմաստուն ես,
Հո զոռով չի՞:

Եվ ծիծաղեց
Առյուծ արքան,
Բաշը ցնցեց
Ինքնահավան,
Հետո ասաց.
— Ճկլիկ աղվես,
Դու քո լեզվով
Ինձ կհաղթես:



ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

# Աքլորաբողոք

Ոսկեփետուրը օրերից մի օր
Հավաքեց բակի փետրավորներին,
Ինքը բարձրացավ չափարի վրա
Եվ ասաց նրանց տխրությամբ խորին.

— Մենք՝ աքլորներս, բողոքում ենք խիստ
Այն խոսքերի դեմ մարդկանց անտեղի,
Որով ծաղրում են նրանք մեզ անվերջ
Եվ վիրավորում մեր հպարտ ցեղին:

Լսեք ուշադիր, դատեք ինքներդ,
Չէ՞ որ խելոք եք ամենքդ էլ, հասուն,
Քիչ ունեցվածքը, չգիտես ինչու,
Աքլորի բեռ են ծաղրանքով ասում:
Թեթևամիտ վեճն՝ աքլորակռիվ,
Անտերունչ տունը՝ պահ տալ աքլորին,
Ինչքը վատնելը՝ աքլորին բառնալ,
Աքլորանալն էլ՝ պարզ է բոլորին:
Մենք նրանց, սակայն, ժամն ենք ցույց տալիս,
Հավերը ձու են զոր-գիշեր ածում,
Իսկ նրանք արված լավության դիմաց
Միայն մեր մասին վատն են տարածում:



ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆԻՑ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# Լսենք Խորենացուն

Մովսես Խորենացին ծնվել է մոտ 410 թըվականին և ապրել շատ երկար: Այսինքն՝ նա 5-րդ դարի հեղինակ է: Իր «Հայոց պատմությունը» Խորենացին գրել է Սահակ Բագրատունի իշխանի պատվերով: Ըստ այդ պատվերի Խորենացին պետք է գրեր հայ ժողովրդի պատմությունը սկզբից մինչև իր օրերը: Նրա «Հայոց պատմության» առաջին գիրքը կոչվում է «Հայոց մեծերի ծննդաբանությունը» և նվիրված է հեռավոր անցյալին. սկսվում է մ. թ. ա. 4-րդ հազարամյակի վերջերից և հասնում մինչև մոտ մ. թ. ա. 1-ին դարը: Այլ խոսքով, Խորենացին իր այդ առաջին գրքում գրում է իր ապրած օրերից 3000-ից մինչև 1000 և ամենաքիչը մոտ 500 տարի առաջ կատարված դեպքերի մասին:

Բայց դրա համար անհրաժեշտ էին գրավոր աղբյուրներ, լեզվաբանական ուսումնասիրություններ, հնագիտական նյութեր, մշակույթի պատմության ուսումնասիրություն: Խորենացու ապրած ժամանակներում լեզվաբանությունը, հնագիտությունն ու մշակույթի պատմությունը Հայաստանում այնքան զարգացած չէին, որ օգնեին ավելի քան 3500 տարվա հայոց պատմություն գրելուն: Իսկ հին սեպագիր արձանագրություններից Խորենացին օգտվել չէր կարող, որովհետև նրա ժամանակ սեպագիր իմացող չկար: Խորենացու ձեռքի տակ չկային նաև Հայաստանի մասին վկայող հույն և հռոմեացի պատմիչների գրքերից շատերը:

Հայոց պատմության հնագույն ժամանակաշրջանի համար մեր պատմահայրը օգտըվում էր Աստվածաշնչից, Մար Աբաս Կատինայի, Ողյուպ քուրմի գրածներից, ինչպես և ժողովրդական զրույցներից:

Բայց Աստվածաշնչում Հայաստանի մասին շատ քիչ է գրված, իսկ Մար Աբասը և Ողյուպ քուրմը հնագույն ժամանակների մասին գրել են ուրիշների գրածների կամ ժողովրդական զրույցների համաձայն: Նրանք ժամանակակից չեն եղել Խորենացուց 2—3 հազար տարի, նույնիսկ 1000 տարի առաջ կատարված դեպքերին: Ժողովրդական զըրույցներն էլ դարերի ընթացքում բերնեբերան անցնելով՝ իրական դեպքերը փոփոխված էին պահել, նրանց առասպելի տեսք տվել:

Խորենացու հայոց պատմության այն մասերը, որոնք ժամանակով շատ հեռու են Խորենացուց, ավելի շատ էլ կարիք ունեն ըստուգման ու ճշտման: Եվ նրա գրքի այն մասերն են ավելի ճշգրիտ, որոնք ավելի մոտ են Խորենացու ժամանակներին:

Հին աշխարհի բոլոր պատմիչներն էլ՝ հույն, հռոմեացի, հայ, ասորի, իրենցից շատ առաջ կատարված դեպքերի մասին գրելիս հաճախ են սխալներ արել, միմյանց հետ շփոթել թագավորներին, նրանց ապրած ժամանակները:

Սխալվում են այն մարդիկ, որոնք ասում են, թե Խորենացուն ընդհանրապես չպետք է հավատալ, և Հայկի ու Բելի, Արամի, Արայի ու Շամիրամի պատմությունները համարում են միայն առասպել, սովորական հեքիաթ: Խորենացուն պետք է հավատալ. այն, ինչ նրա գրքում առասպելի է նման, իրական հիմք է ունեցել, և առասպելանման դյուցազուններն էլ իրական մարդիկ են եղել: Միայն պետք է ամենը ստուգել, ճշտել, պատմական եղելությունը պարզել:

Այսօր, երբ մեր ձեռքի տակ կան հին սեպագիր արձանագրությունների վերծանված

(ընթերցված) շատ վկայություններ Հայաստանի մասին, լեզվաբանության, հնագիտության և մշակույթի պատմության տվյալներ, հնագույն Հայաստանի մասին Խորենացու գրածը մենք կարող ենք համեմատել, ստուգել, ճշտել։ Չէ՞ որ սեպագիր արձանագրությունները գրվել են այն հնագույն ժամանակներում, երբ կատարվել են դեպքերը, փորագրողները դեպքերին ժամանակակից ու մասնակից մարդիկ են եղել, իսկ Խորենացու և նրան ծանոթ հեղինակների գրքերը գրվել են սեպագրերից շատ ավելի ուշ, հնագույն դեպքերին ոչ ժամանակակիցների ձեռքով։

Այսպես, լսենք Խորենացուն։ Որտեղ որ սեպագրերը, ժամանակակից գիտությունը մեզ կարող են օգնել, կփորձենք ճշգրտումներ անել։ Իսկ այժմ տեսնենք, թե ինչպես է մեր մեծ պատմահայրն սկսում հայոց պատմությունը։

Հայերի ծագումը Խորենացին դնում է մ. թ. ա. 4-րդ հազարամյակի վերջերում։ Իր պատմությունը նա սկսում է Նոյ նահապետով, որը, ինչպես գրում է Խորենացին, «հայտնի ու նշանավոր մարդ էր», «հայրենական առաքինությունների նշանավոր ժառանգ»։ Ըստ Խորենացու, Նոյն իր գերդաստանով ջրհեղեղից փրկվելով Արարատ լեռան վրա և այդտեղից իջնելով, Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում է տնավորվում իր երեք որդիների՝ Սեմի, Քամի և Հաբեթի, ու սրանց ժառանգների ընտանիքների հետ։ Ապա Խորենացին գրում է, որ Հաբեթի թոռան որդին էր Թորգոմը։ Հիշենք, որ հնում շատերը հայերին թորգոմյաններ են ասել։ **Թորգոմի տուն** անունով կոչում էին Հայքը։

Այսօր մեզ համար կարևոր է այն, որ ըստ Խորենացու, հայերը ծագել են Հայկական լեռնաշխարհում, իսկ դա, ինչպես արդեն գիտենք մեր 2-րդ, 3-րդ և 4-րդ զրույցներից, հաստատվում է ժամանակակից գիտությամբ։

Ապա Խորենացին պատմում է, որ Թորգոմի որդի Հայկը իր գերդաստանով ու զորքով մի ժամանակ բնակվել է Միջագետքում՝ Բաբելոնի մոտակայքում։ Սա ճիշտ պետք է լինի, քանի որ, ինչպես վկայում են որոշ սեպագիր արձանագրություններ և այլ աղբյուրներ, Միջագետքում միշտ եղել է հայկական բնակչություն։ Հայկն իր զորքով, հավանաբար, զինվորական ծառայության մեջ է եղել Միջագետքում։ Հին ժամանակ այդպիսի կարգ կար՝ ենթակա երկիրը տիրող երկրին զորք էր տալիս։ Ահա ինչ-որ ժամանակ Հայաստանի վրա իշխանություն է տարածած եղել Միջագետքի պետություններից մեկը։ Հայքի և Միջագետքի միջև պատերազմներ հաճախ են եղել՝ մերթ մի կողմն է հաղթել, մերթ մյուսը։ Հիշենք, որ, օրինակ, Աքքադի պետության հարձակումներին հայերը հաջողությամբ դիմադրում էին։ Ինչ-որ ժամանակ էլ հայերը անհաջողության են մատնվել և հաղթած պետությանը զորք են տվել Միջագետքում ծառայելու համար։

*«Հայկական վիշապ» Գեղամա լեռներում (մ. թ. ա. III հազարամյակ)։*





Հայկ աստծու քուրմը առյուծի վրա (որմնանկար Էրեբունիից)

Բայց Հայկն, ինչպես Խորենացին է գրում, ապստամբել է Միջագետքի բռնակալ Բելի դեմ և իր զորքով ու գերդաստանով վերադարձել իր պապերի երկիրը:

Հայկը նախ բնակություն է հաստատել Վանա լճից հարավ-արևելք ընկած մի դաշտավայրում: Ապա այդտեղ թողնելով իր թոռանը՝ Կադմոսին, զորքով ու ազգականներով, ինքը մյուսների հետ եկել, հաստատվել է Վանա լճից արևելք գտնվող մի լեռնադաշտում և անվանել այն Հարք (Հայրեր), ի պատիվ այդ վայրերում հնում բնակված իր նախնիների (հայրերի):

Շուտով Միջագետքից պահանջում են, որ հայերը կրկին հնազանդվեն իրենց: Բայց հայերը մերժում են: Միջագետքից Բելի ղեկավարությամբ հսկա զորք է գալիս Հայաստան:

Հայկը շտապում է Վանա ծովի ափը և իր զորքին կոչ է անում՝ «Կա՛մ մեռնենք, կա՛մ հաղթենք»: Այսինքն՝ նահանջ, փախուստ չպիտի լինի: Հայկի զորաբանակը հակառակորդի զորքից փոքրաթիվ էր, և նա որոշում է ճակատամարտ տալ լեռների մեջ, որտեղ հայերն ավելի մարտունակ էին: Լեռներում ամուր դիրք գրավելով՝ հայերը տեսնում են հակառակորդի «բազմաթիվ ամբոխի անկարգ հրոսակը, որ հանդուգն հարձակումով ցիրուցան վազում էին»,— գրում է Խորենացին:

Ծանր, արյունոտ ճակատամարտ է տեղի ունենում: Ի վերջո, ասուրաբաբելացիների ղեկավարը սպանվում է Հայկի նետից, և հակառակորդի զորքը ցրիվ նահանջում է:

Դրանից հետո, ըստ Խորենացու, ճակատամարտի վայրը կոչվում է **Հայք**, այդ շրջանը՝ Հայոց ձոր: Սեպագիր արձանագրություններում այդ վայրը կոչվում է Հայադու (Հայ տուն): Դա գտնվում է Վանա լճի հարավ-արևելյան կողմում:

Երբ կարդում ենք Խորենացու հաղորդած այս պատմությունը, նկատում ենք, որ այն առասպելի է նման՝ նրանում հսկաներ կան, դյուցազուններ, պատերազմն էլ կարծես առասպելական է նկարագրած: Բայց հաստատ է, որ այդ պատմությունը եղած դեպքերի մասին է, միայն ժողովրդի մեջ խոսվելով, հետո գրի առնվելով փոփոխվել է, այդպիսի տեսք ստացել:

Այսօր Խորենացու հաղորդած այդ պատմությունը մեզ ասում է, որ Հայկ անունով մի հայոց ցեղապետ ու զորավար ապստամբել է Միջագետքի ասուրաբաբելական թագավորության դեմ, հաղթել հակառակորդի զորքերին և Վանա լճի մոտակայքում հիմնել հայոց նոր պետություն: Սա հենց Արարատի հայոց պետությունն էր, որը հետագայում շատ հզորացավ ու մեծացավ և Միջագետքում կոչվեց **Ուրարտու** կամ **Ուրաշտու,** իսկ Հրեաստանում **Արարատ, Ուրարատ:**

Ե՞րբ են տեղի ունեցել Հայկի հետ կապված դեպքերը: Դժվար է ասել: Խորենացին հաստատ ժամանակը չի նշում: Ոմանք կարծում են, թե Հայկը հաղթանակ է տարել մ. թ. ա. 3-րդ հազարամյակի կեսերին: Բայց սա առայժմ չի հաստատվում սեպագրերի վկայություններով: Հավանական է, որ Հայկի ապստամբությունը տեղի է ունեցել մ. թ. ա. 2-րդ հազարամյակի սկզբին կամ կեսերին:

Հայկը ժամանակներ հետո հայ ժողովրդի մեջ աստվածացվեց: Շատ հնում հաճախ էին ցեղապետներն աստվածացվում: Օրինակ, Միջագետքում էլ աստվածացվել է նրանց զորավար Բելը:

Հայկի մասին սեպագիր արձանագրությունները ավելի ուշ շրջանում են պատմում, երբ նա արդեն համարվում էր հայերի գլխավոր աստվածը: Հայկը համարվել է նաև երկնքի աստված, և հայերը աստղային համաստեղություններից մեկը անվանել են Հայկի անունով (հույները այն կոչում էին Օրիոն):

Հայկի անունը ասուրաբաբելական սեպագրերում **Խալդիա** կամ **Հալդիա** ձևն ունի, ուրարտական սեպագրերում Խալդ(ի) կամ Հալդ(ի): Հիշենք, որ հայերենում էլ կան **Հայկ** և **Խայկ** ձևերը (օրինակ, վանեցիները Խայկ են ասում): Արմատը և անվան հիմքն է **հայ**-ը կամ **խայ**-ը: Հալդի, Խալդի ձևերն այդպիսով, հայոց հզոր ցեղապետ Հայկի (Խայկի) անվան տարբերակներն են:

Հայտնի է, որ լ և յ հնչյունները երբեմն իրար փոխարինում են: Օրինակ, գրական հայերենում ասում ենք **գալիս եմ**, իսկ որոշ բարբառներում **կայիս** եմ: Ուրեմն, հայ արմատը կարող էր փոխվել **հալ**-ի կամ հակառակը: Այդպես, **Հայդի**-ն դարձել է **Հալդի**: Իսկ **Հայդի** անունը որոշ լեզվաբաններ բացատրում են իբրև **հայ+դի**, այսինքն՝ հայոց աստվածություն, ուժ (դի-ն հին հայերենում այդ իմաստն է ունեցել):

Այսպես, Հայկը կամ Հալդը հիմնադրում է հայոց նոր պետություն: Նա իր հետ Միջագետքից բերում է շատ մարդիկ, իսկ սրանք էլ իրենց հերթին Հայաստան են բերում Միջագետքի մշակույթի, սովորությունների, հագուստի շատ տարրեր: Ահա Վանա լճի մոտ կազմված այս թագավորությունն է, որ հետո պետք է միավորեր ամբողջ Մեծ Հայքը:

Խորենացին այդ միավորման մասին էլ է պատմում, թեև դարձյալ առասպելի նման: Նա գրում է, որ Հայկի զավակները, թոռները, ծոռները աստիճանաբար գնում են հյուսիս, հյուսիս-արևելք և հյուսիս-արևմուտք ու հնազանդեցնում տեղի բնակչությանը: Այդպես Վանի պետությանն էին միացվում Մեծ Հայքի տարբեր մասերը՝ Արագածը, Արագածոտնը (Արագածի լանջերը), Արարատ լեռն իր շրջակայքով, նաև Արարատյան դաշտը, Գեղարքունիքը Սևանա լճով, Շիրակը, Տայքը և այլն:

Այս բոլորի մասին ուրիշ ձևերով, ինչպես կտեսնենք, վկայում են նաև սեպագիր արձանագրությունները:

(շարունակելի)

ԳԵՎՈՐԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# Պարծենկոտ բզեզը

Մի օր բզեզի մտքով անցավ,
Թե՝ արծվի պես ինչո՞ւ չեմ ճախրում,
Հպարտությունից փքվեց, ուռճացավ
Ու իրեն զգաց բարձր երկնքում:
Այնքան մեծացավ բզեզն իր աչքին,
Բզեզն իրենով այնքան հիացավ՝
Իրենից ցածր տեսավ բոլորին,
Եվ ինքն իր աչքի սիրելին դարձավ:
— Ահա, ես այդքան հզոր եմ եղել,
Ծնված եմ եղել փայլուն տաղանդով,
Աշխարհը գիտե, ես չեմ իմացել,
Զուր քարշ եմ եկել բզեզի կյանքով:
Հայրս ազգությամբ եղել է արծիվ,
Ես էլ նրա պես ո՞նց կսավառնեմ,
Ներքևում ապրող անմիտ ճանճերին
Ու միջատներին ո՞նց չարհամարհեմ:
Այս մտքով տարված ու ոգևորված՝
Ինչքան ուժ ուներ, նա վերև ճախրեց,
Նրան նկատեց ճնճղուկը քաղցած
Ու պարծենկոտի հարցերը լուծեց:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆ




(հեքիաթ)

Լինում է, չի լինում, մի մարդ է լինում: Էս մարդն ապրում է գյուղում: Ունենում է կին, շատ երեխաներ, աղքատ են ապրում: Նրա եղած-չեղածը մի կով էր, որի կաթն ամեն օր տանում է քաղաք, ծախում, հացումաց առնում, բերում, հազիվ իր ընտանիքի օրվա ապրուստը հոգում:

Օրերից մի օր էլ, սովորականի պես, առավոտյան կաթը տանելիս է լինում քաղաք, մեկ էլ ճանապարհին մի մեծ օձ է առաջը կտրում.

— Այ մարդ,— մարդկային լեզվով ասում է օձը,— մի քիչ կաթ տուր՝ խմեմ, չես փոշմանի:

Էս մարդը մեկ վախենում է, քիչ ետ-ետ է գնում, հետո շատ զարմանում է, որ օձը մարդկային լեզվով խոսեց, մտածում է. «Եթե սա մարդկային լեզվով խոսեց ու ինձանից կաթ խնդրեց, դժվար թե ինձ վնաս տա: Մի քիչ կաթ տամ, տեսնեմ ինչ է դառնում»: Նայում է շուրջը, տեսնում է մի թասանման քար, մաքրում է, ցեխն ու փոշին հեռացնում, կաթը լցնում է մեջը: Օձը գլուխը կոխում է կաթի մեջ, խմում, գլուխ է տալիս մարդուն ու մտնում մի մեծ քարի տակ:

Էս մարդր գնում է քաղաք, կաթր ծախում, իր գնումները կատարում և կեսօրից հետո նորից նույն ճանապարհով վերադառնում: Հասնում է նույն տեղը, որտեղ հանդիպել էր օձին: Դեռ հեռվից նկատում է, որ թասանման քարի մեջ, որտեղ առավոտյան կաթն էր լցրել, ինչ-որ բան է պսպղում: Մոտենում ու տեսնում է, այ քեզ զարմանք, մի պսպղուն ոսկի դրված է քարին: Ուրախանում է, աշխարհով մին է լինում: Ոսկին դընում է գրպանը, գնում գյուղ:

Հաջորդ օրը նորից կովը կթում, կաթը տանում է քաղաք: Հասնում է նույն տեղը, տեսնում՝ օձն իրեն է սպասում: Էս անգամ ավելի շատ կաթ է լցնում քարե թասի մեջ ու գնում:

Երեկոյան վերադարձին քարե թասի մեջ նորից գտնում է մի պսպղուն ոսկի: Նորից ոսկին դնում է գրպանն ու գնում, որոշում է մարդու բան չասել: Տաս օրում տաս ոսկի է ստանում, երկու կով է առնում, ավելի շատ կաթ է տանում քաղաք ու ամեն անգամ ավելի շատ կաթ է լցնում օձի քարե թասի մեջ: Էս մարդը շատ հարստանում է, տներ է կառուցում, կահկարասի է գնում, այգի է գցում և նամուսով ապրում է, աղքատներին էլ առատ բաժին է հանում: Աղքատները շատ գոհ են մնում սրանից, իսկ հարուստները շատ զարմանում են, թե էս աղքատ մարդն ինչպես հարստացավ մի տարում, որ նույնիսկ ուրիշներին է ձեռք մեկնում:

Անցնում են տարիներ, մեծանում են երե-



…կարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

…սաները, դպրոց է ուղարկում, կրթության է …տալիս: Իսկ տարիներն իրենցն են անում, …ս մարդը կամաց ծերանում է, դժվար է …ջայլում: Կանչում է ավագ որդուն և ասում.

— Որդիս, էսքան տարի ոչ ոքի չեմ ա…ել իմ գաղտնիքը, թե ես ինչպես եմ հա…րստացել ու ինչպես եմ ձեզ պահել, կրթու-թյան տվել: Արդեն ծերացել եմ, էլ չեմ կարող կաթը տանել քաղաք՝ ծախելու:

— Ես կտանեմ, հայրիկ ջան,— ասում է ավագ որդին,— դու հանգիստ նստիր տանը, էլ մի չարչարվիր:

— Դու մինչև վերջ լսիր, որդիս, ես դեռ չեմ ասել իմ գաղտնիքը: Քաղաքի ճանապարհին մի մեծ օձ կա: Ամեն առավոտ, կաթը տանելիս, նրա քարե թասի մեջ ես կաթ եմ լցնում: Նա խմում է կաթը, և ես վերադարձիս էդ թասի մեջ մի շողշողուն ոսկի եմ գտնում: Էդ ոսկով ենք մենք հարստացել, որդիս: Դու էլ էդպես արա:

Որդին լսում է հորն ու մտածում. «Ուրեմն ինչքան ոսկի ունի օձը, որ ամեն օր մի ոսկի է տվել հորս և դեռ տալիս է…»: Որոշում է սպանել օձին և միանգամից տիրանալ նրա գանձերին:

— Լավ,— ասում է,— հայրիկ, ես էլ էդպես կվարվեմ:

Հաջորդ առավոտյան ավագ որդին է տանում կաթը:

— Որդիս, օձին վնաս չտաս, հա՛:

Որդին չի պատասխանում, դաշույնն առնում է, գնում:

Երբ հասնում է հոր ասած տեղը, օձն առաջը կտրում է:

— Այ տղա,— ասում է,— մի քիչ կաթ տուր՝ խմեմ, չես փոշմանի:

Օձը չէր վերջացրել իր խոսքը, երբ տղան դաշույնը հանում ու թափով վրա է բերում: Օձը մի կողմ է սողում, բայց թուրը հասնում է պոչին: Պոչը պոկվում է, առանց պոչի օձը կծկվում է արագ, նետվում տղայի վրա և խայթում: Տղան մահանում է:

Երեկոյան, տեսնելով տղան չվերադարձավ, կասկած է ընկնում հոր սիրտը: Առավոտյան վաղ վեր է կենում և գնում: Դեռ հեռվից տեսնում է որդու դիակը: Մոտենում և տեսնում է դաշույնը որդու ձեռքին է, օձի պոչն էլ՝ դաշույնի մոտ ընկած է: Ծերունին ամեն ինչ հասկանում է ու դառը-դառը լաց լինում: Օձը գլուխը հանում է բնից և ասում.

— Ես մեղավոր չեմ, ծերունի, նա իմ պոչը կտրեց, ես էլ նրան խայթեցի: Դու նրա դիակի վրա լաց եղիր, ես՝ իմ պոչի:

— Ես գիտեմ, որ դու մեղավոր չես, իմ տղան է մեղավոր, ես նրան զգուշացրել էի, չլսեց…

— Էդպես է, ծերունի,— պատասխանում է օձը,— ջահելը երբ մեծին չի լսում, ոտքը քարի է գալիս: Լավ չես խրատել որդուդ:

# Նվիրական մասունք

(շարադրության մրցույթ)

Ալ վզկապը երրորդ դասարանից իմ սիրելի ուղեկիցն է ու անբաժան ընկերը: Ինչ անշուք է դպրոցական համազգեստն առանց վզկապի: Վզկապը մեր հզոր հայրենիքի դրոշի մի մասնիկն է, որը խորհրդանշում է պիոներների, կոմերիտականների, կոմունիստների անխախտ միությունը: Ու ես, որպես մի սուրբ մասունք, կրում եմ այն ու հպարտանում: Սիրում եմ իմ վզկապը՝ ներկված հերոսների արյունով, ու պահպանում եմ այն որպես ամենաթանկ ու նվիրական մասունք:

Վզկապը այն մարդկանց արյունով է թաթախված, որոնք իրենց կյանքը չեն խնայել մեզ համար, զոհվել են, որպեսզի մենք երջանիկ լինենք: Մենք պետք է պատվով ու արժանապատվությամբ կրենք մեր դրոշի այդ սուրբ մասնիկը: Ցավոք, կան պիոներներ, որոնք չեն գիտակցում պիոներական վզկապի խորհուրդը և այն կրում են ձևականորեն:

Երբ առավոտյան դուրս եմ գալիս տանից, մեղմ հովիկը ծածանում է ալ վզկապս, և ես լցվում եմ բերկրանքով: Ու ես կոչ եմ անում պիոներներին՝ բարձր պահեք ձեր վզկապի պատիվը:

ԱՐՄԵՆՈՒՀԻ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
№ 169 դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի

# «Երևան դարձած իմ Էրեբունի»

(շարադրության մրցույթ)

«Իմ հայ ժողովուրդ, դու փոքր ես եղել,
Աղբյուր ես եղել և ոչ թե հեղեղ:
Դու փոքր ես եղել, եղել ես մի բուռ,
Բայց մեծ է եղել ափդ լիաբուռ:
Դու փոքր ես եղել այն մուրճի նման,
Որ ձև է տվել ժայռերին համառ:
Փոքր, բայց նման այն կշռաքարին,
Որ միշտ դրվում է բարու նժարին
Եվ այդ նժարը ներքև է տարել...»:

Մեր երկիրը կոչել են Արմենիա, Ուրարտու, Նաիրի, իսկ մեզ՝ արմեններ, հայ: Մենք ունեցել ենք Հայկ, Արամ, Արա Գեղեցիկ, Տիգրան Մեծ, Աշոտ Երկաթ: Այս հսկաները՝ մեր նախնիները, պայքարել են օտար նվաճողների դեմ: Քանդելն ավելի հեշտ է, քան կառուցելը, ոչնչացնելն ավելի հեշտ է, քան ստեղծելը: Թշնամին քանդել է, մեր ժողովուրդը վերաստեղծել է և անդադրում ստեղծել: Այսօր Էրեբունիի տեղ ունենք մի նոր Երևան, Տիգրանակերտի, Վաղարշապատի և Դվինի փոխարեն՝ Էջմիածին, Արտաշատ, բազում այլ քաղաքներ:

«Տեսիլքից են ծնվել տառերը մեր,
Հողմերով են սնվել տառերը մեր,
Ջրհեղեղվել են, դարձել երկաթագիր,
Քարերին են գրվել տառերը մեր...
Երբ փորձել են ջնջել ու եղծանել,
Կայծակին են տվել տառերը մեր»:

Մեր մայր լեզուն մենք դարձրինք աստված, թեև գիտեինք, որ աստվածները զոհ են պահանջում: Տվինք զոհեր, անթիվ, անհամար: Ավարայրում ընկանք արնաքամ, չզիջեցինք ոչ մի հնչյուն: Եվ մենք մնացինք մեր գրով, մեր լեզվով հարուստ, կուլ չգնացինք զավթիչներին:

Շատ արհավիրքների միջով անցավ հայ ժողովուրդը, բայց չկորցրեց իր հոգու արիությունը, իր հավատն ու հույսը: Եվ վերածնվեց ու բարգավաճեց: Վերածնված Հայաստանի մասին է, որ տարիներ անց ժամանակի մեծագույն նկարիչներից մեկը՝ Ռոքուել Քենթը, գրեց. «Եթե ինձ հարցնեին, թե Երկիր մոլորակի վրա ամենից շատ որտեղ կարելի է հանդիպել հրաշքների, ես նախ և առաջ Հայաստանի անունը կտայի: Ակամա ապշում ես աշխարհի այս փոքրիկ անկյունում տեսնելով այնպիսի հուշարձաններ և այնպիսի մարդկանց, որոնք կարող էին լինել ամբողջ աշխարհի հպարտությունն ու զարդը...»:

ՍՈՆՅԱ ԱԲԳԱՐՅԱՆ
Երևանի № 173 միջն. դպրոց, 8-րդ դասարան

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ •



«ԾԱՂԻԿՆԵՐ»
ԱԼՈՅԱՆ ՌՈՒԶԱՆՆԱ
Աբովյանի շրջան գ. Առինջ

ԵԳՈՐՅԱՆ ԳԵՎՈՐԳ
Արտաշատի շրջ. գ. Այգեզարդ 13 տ.



ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Արևածաղիկը

Եղավ մի օր, որ արթնացան ծաղկունք սարին
Ու լալիս են–արև չկա:
Ծաղկանց լացից թռչուններն են զարթնել ծառին
Ու լալիս են-արև չկա:
Թռչունների լացից արթնացել է մեղուն
Ու լալիս է-արև չկա:
Մեղվի լացից թիթեռնիկներն են արթնանում
Ու լալիս են–արև չկա:

— Նեղացրել ենք մենք նրան,— ասում են թռչունները:
— Խռովել է նա մեզնից,— վանկարկում
են ծաղիկները:

Ու հեկեկոց, լաց է չորս դին:
Գուշակ գորտը տխուր կռռաց,
Իր եղունգին նայեց, ասաց.
«Ոչ մրսել է, հիվանդացել,
Ոչ էլ փորձանք է պատահել,
Չի նեղացրել ոչ ոք նրան,
Ահա, ահա եղունգիս մեջ
Արեգակին տեսնում եմ ես,
Միշտ իր նման մի ծաղկի հետ խաղ է բացել,
Խաղ է բացել ու դուրս գալը իր մոռացել,
Մի հնար կա, պիտի գնաք
Ու այդ ծաղկին դուրս գողանաք...»:
Ծաղկունքն ասին՝ մենք մեր փոշուց ալյուր մաղենք,
Հավքերն ասին՝ մենք ալյուրից խմոր շաղենք,
Թիթեռները՝ մենք խմորից գաթա թխենք,
Մեղուները՝ գաթան ճամփի պաշար անենք,
Գնանք ու այդ ծաղկին առած այստեղ բերենք:
Ծաղիկն իսկույն ալյուր մաղեց,
Թիթեռն իսկույն գաթա թխեց,
Ու մեղուներն հավաքվեցին ինչքան որ կան,
Ճամփի պաշար գաթան առած ճամփա ընկան...
Ու գնացին չգիտեմ՝ երբ,
Ու չգիտեմ՝ երբ դարձան ետ,
Միայն գիտեմ, որ ետ դարձան՝
Դեղին ծաղիկը իրենց հետ:

Անուն չուներ այս ծաղիկը, անուն չուներ,
Ոչ ոք նրան երբ չէր տեսել,
Ո՞վ կամ ինչպե՞ս անուն դներ,
Հիմա բերել և ուզում են անուն դնել,
Անուն դնել, բայց ո՞վ կասի՝ ի՞նչ անվանեն...

Տեսան, որ նա շատ նման է արեգակին,
Տեսան, որ նա շատ է սիրում արեգակին,
Ցերեկն՝ ուրախ, արևին է միշտ նա նայում,
Գիշերն՝ տխուր, երբ արեգակն է հեռանում,
Արևատեսք, արևագույն, արևաբույր...
Արևածաղիկ կոչեցին կամ Արևաքույր:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



ՎԸՐԲԱՆ ՍՏԱՄԱՏՈՎ
(բուլղար գրող)

# Ճամփորդելու պատրաստություն

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մի երեկո, Ալյոշի ու նրա հոր հետ նըստած էինք իմ նավախցում: Անելիք չունեինք, ու ես սկսեցի պատմել, թե ինչպես էի պատանի ժամանակ նավով փախել Մարոկկո: Հետո մի հեռադիտակ, մի դանակ, մի բոքոն հաց և Բուլղարիայի մի հին քարտեզ՝ մինչև Միդյա Էնոս գիծը, կիսատ-պռատ, այյուրով կպցրած: Փախել էի ոչ թե մենակ, այլ եղբորս հետ, ես՝ տասներեք, նա՝ տասնվեց տարեկան:

Ալյոն հետաքրքրությամբ աչքերը չռեց և դադարեց ծամել:

— Ներեցեք,— ասաց նա շատ քաղաքավարի,— միայն չհասկացա, այդ ի՞նչ Միդյա Էնոս գիծ էր:

Ես ձեռքս թափ տվի, իբր՝ դրա ի՞նչ բացատրելու ժամանակն է: Բերանս լիքն էր, բացի այդ ես դա կատակի համար պատմեցի: Նոր էինք ճաշակել շնաձկան լողաթևերից պատրաստված ապուրը և արդեն անցել էինք գարեջրի հետ խաշած խեցգետին կրծելուն: Ալյոշի հայրը քաղցած էր և բոլորովին սիրտ չուներ աշխարհագրական դասախոսություններ լսելու:

Ինչքան կարող էի, բացատրեցի, թե ինչ քարտեզներով էինք ժամանակին սո-

վորել դպրոցում և ձեռքս մեկնեցի բաժակիս։ Բայց Ալլոն ափով փակեց այն և նայեց ուղիղ աչքերիս մեջ։

— Ինձ չեք խաբում, այնպես չէ՞։

— Իհարկե՝ ոչ։

— Այդ դեպքում ձեր ինչի՞ն էր պետք այդպիսի քարտեզը, որտեղ նույնիսկ Բոսֆորն էլ չկա։ Չէ՞ որ Մարոկկո էիք փախել։

Ճար չկար։ Բացատրեցի, որ այն ժամանակ տղաները· այնքան խելոք չէին, ինչպես հիմա, և մեր բռնած գործերը խեղճուկրակ բաներ էին։ Ի՞նչ ճանապարհորդություն, ի՞նչ նավագնացություն։ Ամբողջ օրը բավարարվում էինք միայն ծովահենների մասին զանազան արկածային գրքույկներ կարդալով, դասերից հետո էլ հավաքվում էինք ալեպատնեշի վրա և սկսում երևակայել, թե ով ինչ է դառնալու և ուր է նավարկելու, երբ մեծանա։ Հայացքներս ագահորեն հեռուն հառած, ուզում էինք թափանցել հորիզոնից այն կողմ, տեսնել, թե ինչ կա այնտեղ։ Բայց ծովը մեզ համար մնում էր մի կտոր կապույտ ջուր՝ Գալաթիայի և Կալիակրայի միջև փակված, իսկ թե ինչ կար նրանից այն կողմ, չգիտեինք։

— Եվ ի՞նչ եղավ ձեր այդ նավը,— անվստահ հարցրեց Ալլոն։

— Նա՞վը, ոչ մի բան։ 1937 թվականի ամռանը մեզ հաջողվեց աննկատ բարձրանալ մի իտալական շոգենավ։ «Սկուարչո» էր այդ շոգենավի անունը։ Ես ու եղբայրս էինք միայն։ Մնացած փախստականները, որ մեր թաղի տղաներից էին, վախկոտներ դուրս եկան։ Վերջին րոպեին, ամեն մեկը մի պատճառ բռնելով, ետ կանգնեց։ Միայն մեկը նրանցից, որին «Բողկ» էինք ասում, օգնեց, որ աննկատ սողոսկենք շոգենավ։ Առանց նրա երևի չկարողանայինք ոչինչ անել։ Այն ժամանակ շոգենավերի պարանների առաջ թիթեղյա կլոր պատնեշներ էին դնում առնետներից պաշտպանվելու համար։ Դրանց թիվ ու վերջ չկար, ամբողջ ոհմակներով էին խուժում, և այդ պատնեշներն էին, որ կարողանում էին փրկել բարձված ցորենը առնետների ամենակուլ ատամներից։ Բայց այդ թիթեղները նաև մեզ համար էին այդտեղ դրված։

— Պի՞նդ բաներ էին։

— Ձեռք տալ չէր լինում։ Ինչևէ... Գիշերը ուղղակի ծովի վրա կախված պարանների վրայով մագլցեցինք, մտանք սնդուկների մեջ ու թաքնվեցինք այնտեղ։ Քիչ էր մնում խեղդվեինք։ Առավոտյան, շոգենավը ճամփա ընկնելուց քիչ անց, հայտնաբերեցին մեզ։ Չծեծեցին, ոչ էլ նավից ցած գցեցին, ինչպես տարիներ առաջ Սոզոպոլի մոտ արել էր «Ժան Ֆրեսինեի» նավապետը։ Բայց առանձնապես երես էլ չտվեցին։ Մի մակույկ իջեցրին և մեզ մեջը նստեցնելով, հանձնեցին Բուրգասի ոստիկանությանը, սա էլ իր հերթին մեզ ետ ուղարկեց։ Մեր ամբողջ արկածը ավարտվեց Վառնայի ոստիկանատան նկուղում, որտեղ մնացինք երեք օր։

— Ինչո՞ւ, ինչի՞ համար,— զայրացավ Ալլոն։

— Ինչի՞ համար. որպեսզի խելքներս գլուխներս գա։ Քեզ էլ որ երեք օր ու գիշեր մութ նկուղում պահեն, հազիվ թե մեկ էլ մտքովդ անցնի փախչել...

— Հետո՞։

— Հետո ոչինչ։ Չորրորդ օրը մեզ բաց թողեցին։ Անմիջապես վազեցինք դեպի մեր բլուրը, որտեղ սովորաբար հավաքվում էինք տղաներով։ Մեզ դիմավորեցին որպես հերոսների, չնայած նկուղում մի առնետ տեսնելիս ձայներս գլուխներս էինք գցում։

— Հետո՞, ա՞յդ էր եղածը։

— Իսկ դու ի՞նչ էիր ուզում. փախուստ կոչվածը երբեք էլ տեղ չի հասցնում քեզ։

— Հապա ի՞նչն է հասցնում,— նորից լարվեց Ալլոն, որին, երևում է, այդ հարցը վաղուց էր հուզում։

— Իսկական արձակ տարածությունը քո մեջ է, տղաս, և ոչ թե քո շուրջ։

— Ո՞չ, դու ինձ տուր այդ արձակ տարածությունը...

— Բայց չէ՞ որ դու ունես այն,— պատասխանեց նրան հայրը։— Հրեն՝ քո առաջ։ Ժամանակին մենք չունեինք, իսկ դու ունես։

— Պիտի ունենամ, հապա ի՞նչ,— մի տեսակ անորոշ սպառնաց Ալլոն։

Այդ օրվանից նա գրեթե մի ամբողջ շաբաթ չերևաց։ Ներսում փակված ամբողջ օրն ինչ-որ բան էր անում։ Միայն բոցմանից էինք մեկ-մեկ տեղեկանում, որ նա գնացել է իր մոտ ու հատիչ կամ մի կտոր փափուկ փայտ խնդրել։ Մինչև ուշ գիշեր նրա խցի լույսը վառվում էր։ Իսկ երբ աչք էի ածում լուսանցույցից ներս, տեսնում էի, որ կամ գիրք է կարդում, կամ էլ կռացած է ինչ-որ թղթերի վրա։ Ինձ թվում էր՝ դրանք գրառումներ են, որոնք համառորեն թաքցնում էր նույնիսկ հորից։



— Չեմ հասկանում այդ տղային,— գանգատվում էր գլխավոր մեքենագետը,— հիմա էլ խելքը տվել է առագաստանավեր գծելուն:

Մի օր էլ, չգիտեմ ինչպես եղավ, մտա գլխավոր մեքենագետի նավախուցը: Ամեն ինչից երևում էր, որ Ալյոն քիչ առաջ այստեղ է եղել: Տաշեղներով լի սեղանին ընկած էին գործիքներ, պարանի կտորներ, ասեղներ: Եվ դրանց մեջ մի սքանչելի, դեռևս անավարտ երկկայմանի առագաստանավի մոդել: Բրիգի և շխունայի միջին տեսակի մի բան: Մնում էր միայն կպցնել ամենավերին կտավները: Ուրեմն, ահա թե ինչով է զբաղված եղել: Երկար մտածում էի, թե ի՞նչ էր ինձ հիշեցնում այս փոքրիկ սքանչելիքը: Հանկարծ գլխի ընկա. հիշեցնում էր մեր երբեմնի փոքրիկ նավը:

Նայեցի շուրջս:

Անկողնին ընկած էր մի երկար, սպիտակ թուղթ: Վերևում գրված էր. «Ի՞նչ է ինձ հարկավոր շուրջերկրյա նավարկության համար»: Գործը լրջանում էր: Ցուցակը պարունակում էր քառասուներկու կետ: Սկսեցի կարդալ. «Նիկիֆորի և Ռուբենի համաձայնությունը, երկսայր դանակ, լապտեր, կացին, վրան, ռետինե կոշիկներ, երկու զույգ շալվար, ափիսեր, հարյուր թերթանի տետր, տասը հատ գրիչ...»:

Թիկունքում ոտնաձայներ լսեցի:

Շուռ եկա:

Ծեմին կանգնած էր Ալյոն. մեղավոր

հայացքով նայում էր ինձ, ասես հանցանքի վայրում բռնվածի պես: Կամացուկ առաջ եկավ, զգույշ ու հոգածությամբ ծածկեց մոդելը, որպեսզի կայմերի գագաթները չվնասվեն: Հետո տարավ, տեղավորեց պահարանում, շորերի արանքում, և, ուղիղ աչքերիս մեջ նայելով, ասաց.

— Ինձ չեք մատնի, այնպես չէ՞:

— Այդ էր պակաս:

— Ոչ, խոստացեք, որ չեք ասի ո՛չ հայրիկին, ո՛չ էլ ուրիշ մեկին:

— Բնական է,— ասացի,— գաղտնիքը մնում է գաղտնիք: Ուզում եմ միայն հարցնել՝ ձեր խմբակից Նիկիֆորն ու Ռուբենը գիտե՞ն այդ ճամփորդության մասին:

— Դեռ ոչ, բայց կիմանան:

— Եվ եթե երբևէ ձեզ թույլատրվի մեկնել, ինչպիսի՞ երթուղի կընտրեք: Թե՞ դեռ չեք մտածել:

— Ինչպե՞ս չենք մտածել: Միայն թե նամփա ելնենք: Պիտի մեկնենք հարավ. Սուեզի ջրանցք, Կարմիր ծով, Բաբ-էլ-Մանդեբ... Պիտի սպասենք մինչ քամիները փչեն և կղզի առ կղզի պիտի հատենք Հնդկական օվկիանոսը, հետո Արաֆուրա ծովի և Տորեսյան գետի միջով պիտի դուրս գանք Խաղաղ օվկիանոս, հետո...

— Իսկ Կոկոսյան կղզիների վրա պիտի իջնե՞ք:

— Իհարկե:

— Բայց ո՞ր կղզիների, Հնդկական օվկիանոսում գտնվողների՞, թե՞ Պանամայից հարավ...

— Պարզ է՝ Հնդկականի:

— Եվ ի՞նչ պիտի ուտեք ճանապարհին:

— Ձուկ, նաև այս ու այն...

— Կարելի է,— ասացի:— Տարիներ առաջ Պորտ-Սուդանում ես տեսել եմ այդպիսի մի առագաստանավ: Անձնակազմը մտնում էր նավից նավ ու մեկից կարտոֆիլ էր մուրում, մյուսից՝ մրգեր: Վեց տղա ու վեց աղջիկ էին: Փող էին հավաքել ու այդպիսի մի հին նավ գնել:

Ալոն լսեց ինձ, հետո վճռականորեն գլուխը թափ տվեց ու ասաց.

— Մեզ մոտ ոչ մի աղջիկ էլ չպետք է լինի: Ոչ էլ պիտի որևէ բան մուրանք...

Ես ժպտացի:

— Մի շտապիր նման որոշումներ ընդունել: Իսկ ղեկին ո՞վ է լինելու:

— Պարզ է՝ ես:

— Դե որ այդպես է, ուրեմն հանգիստ նստելուն վերջ: Վաղվանից սկսում ես պարապել. նավագնացություն է, խնդիրներ լուծել է: Եթե, իհարկե, լուրջ ես վերաբերվում:

Ալոն կարմրեց.

— Դուք ինչի՞ տեղ եք դրել ինձ:

— Ծովագնացի, իհարկե: Դեռ... ոչ այնքան, բայց եթե մտքիդ դնես ու սովորես, կարող ես և դառնալ:

— Ճի՞շտ:

— Միայն թե կեսից չձանձրանաս ու թողնես, սա վեգ խաղալ չէ:

— Ե՞ս: Բնավ, երբեք, ոչ մի անգամ,— աչքերը փայլում էին:

— Լավ, այդ դեպքում ես քեզ կտամ բոլոր անհրաժեշտ դասագրքերը, հաշվումների տախտակները, և վաղվանից կսկսենք «աստղեր իջեցնել» երկնքից: Երեկոները էլ պիտի քննություններ անցկացնենք: Աշնանը, ոչ, դու դեռ փոքր ես, եկող տարի, եթե ուզես, քեզ կընդունենք ծովագնացության տեխնիկում, նավային ակումբի անդամ էլ կդառնաս և կսկսես վարժություններ անել: Հայրիկիդ հետ, եթե կարիք լինի, կխոսենք, չնայած չեմ կարծում, թե նա դեմ լինի: Դու միայն պարապիր ու պատրաստվիր քննություններին:

Ալոն լռում էր: Ժամանակ առ ժամանակ ծիծաղում էր քթի տակ կամ գողունի նայում հոնքերի տակից:

— Իսկ ես կարծում էի, որ երբ իմանաք իմ ցուցակի մասին, պիտի ծիծաղեք վրաս:

— Հիմարություն, ինչո՞ւ պիտի ծիծաղեմ: Ուրեմն հասկացանք իրար: Վաղվանից ժամերով չկանգնես տղաների մոտ, այլ կնստես ու...

— Հասկանալի է...

Այլևս ավելորդ էր ուրիշ բան ասել:

— Միայն մի բան չհասկացա,— արդեն դռների մեջ ասացի ես,— ինչի՞դ են պետք ցուցակում նշված այն հարյուր թերթանի տետրը և տասը գրիչը...

Ալոն խորամանկ ծիծաղեց.

— Շատ պարզ. նավային օրագիր պահելու համար: Եվ... որպեսզի մի օր կարողանամ նկարագրել արկածներս:

— Ճիշտ որ,— ասացի:— Տես, այդ մեկը մտքովս չէր անցել:

Ես շտապեցի դուրս գալ, որպեսզի Ալոն կարողանա հանգիստ ճշտումներ կատարել իր ցուցակում:

Բուլղարերենից թարգմանեց
ՄԱՐԳԱՐԻՏ ԹԵՐԶՅԱՆԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՀԱՂԹՈՒՄ Է ԱՄԵՆԱԱՐԱԳԱՎԱԶԸ



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Նապաստակը գերազանց վազորդ է: Իր կյանքի համար վճռական նշանակություն ունեցող րոպեներին կարող է «զարգացնել» ժամում 80 կմ արագություն: Քիչ գիշատիչներ կան, որոնք այդ արագությամբ կարող են հետապնդել նրան:

Նապաստակը աչքի է ընկնում նաև խորամանկությամբ: Սովորաբար քնելուց առաջ նա բազմաթիվ վազքահանգույցներ է կատարում, որպեսզի նրան հետապնդողը զբաղվի հետքը որոնելով, խճճվի այդ հանգույցներում, իսկ ինքը կարողանա հեռանալ և ժամանակ ունենա քնելու:

Այս փոքրիկ ու անհանգիստ կենդանին մեծ թվով բնական թշնամիներ ունի: Նրան հետապնդում և որսում են գայլը, աղվեսը, շնագայլը, բորենին, արծիվը, բազեն: Ահա թե ինչու ամեն ինչ որոշում են նրա խոշոր ականջները և ուժեղ ոտքերը: Արագ վազքը նապաստակի կենսունակության գլխավոր պայմանն է:

Վազքային մրցակցությունները հատուկ են այն բոլոր կենդանիներին, որոնց ոտքերը փրկում և կերակրում են իրենց: Եղջերուները, իշայծյամները, այծյամները, նույնիսկ գայլերն ու ջայլամները: Գիշատիչների գործը ավելի դժվար է, խելագար վազքը այստեղ ուղեկցվում է դաժան ու արյունարբու մենամարտերով:

Նապաստակները տարվա ընթացքում երեք անգամ սերունդ են տալիս: Ձմռան վերջում, գարնանը և ամռան վերջում: Առաջին անգամ նա ունենում է 1—2 ձագ, որոնք ծնվում են հալոցքի ժամանակ, երկրորդ սերունդը հայտնվում է ամռանը, այս անգամ ձագերի թիվը մեծ է՝ 3—5, իսկ աշնան սկզբում ծնվում են 2—3-ը, որոնց անվանում են «տերևաթափային»: Նապաստակների համար շատ ձագեր ունենալը խիստ կարևոր է: Նորածիններից շատերը սատկում են անբարենպաստ եղանակային պայմանների՝ ցրտի, խոնավության հետևանքով, կամ էլ զոհ են գնում իրենց բնական թշնամիներին՝ գայլերին, աղվեսներին, շնագայլերին, արծիվներին ու բազեներին, նույնիսկ՝ ագռավներին ու կաչաղակներին:

Ճակատագրական պահերին նապաստակը շրջվում է մեջքի վրա, և ուժեղ ու ամուր ետին ոտքերը վերածվում են զենքի, որոնք բավականին վտանգավոր են հարձակվող հակառակորդի համար: Բազեն, օրինակ, տեսնելով նապաստակին այդ դիրքում, սովորաբար ետ է ցատկում, ընկրկում: Հայտնի են դեպքեր, երբ նապաստակը ետևի ոտքերով հարվածելով պատառոտել է որսորդի կիսամուշտակը:

Այնպես որ շլդիկները միայն փախուստով չէ, որ փրկում են իրենց կյանքը: Նրանք կարողանում են նաև մարտնչել: Այդ գործում նրանց օգնում են էվոլյուցիոն պրոցեսում բնական ընտրությամբ ամրացած, ուժեղացած ետին ոտքերը:

# Ծանր օր

ՎԱՀԱՆ ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

Թոշնասանդուխք սարի լանջին կանգնած մենավոր կաղնու գլխավերևում արդեն որերորդ անգամ նույն անիմաստ պտույտն էր կատարում լեռնային հսկա մի արծիվ: Կաղնուց ներքև, ձորապռնկով աղեղված տափարակում, զամբիկի մոտիկությունից, թե կանաչ խոտի բույրից խենթացած, վրնջում ու կապը կտրատում էր Ենոքի ջահել հովատակը: Վրնջաց, վրնջաց, ցցի շուրջը անհույս պտտվեց ու հետո գլուխը կախ լուռ արածում էր: Ծարժիչի խուլ հոհնդը սար ու ձորի խաղաղ ամայության վրա մաղվեց, հեռու մի տեղ արևի մեջ մի պահ փայլեց ու կորավ մեծ քաղաքներ թռչող մի ինքնաթիռ: Ու հետո լուռ էր: Եվ այդ խաղաղ լռության, արևի առատ լույսի, կանաչ սարերի ու երկնքի կապույտ գույների մեջ Թոշնասանդուխք սարի խոտհարքի թեք լանջին կեռվել, հորս հետ հունձ էինք անում:

Հայրս լավ հնձվոր էր: Ուղիղ, երկար լասերը, կանաչ ժապավեններ նման, նրա թիկունքում սիրուն ձգվում էին: Գերանդին համաչափ ֆշշում ու պատռում էր խոտհարքի կանաչ կուրծքը, և նրա գերանդու անից խոտհարքը նահանջում, պարտված բանակի խուճապով փախչում էր: Ես՝ գերանդի բռնելու արհեստին անտեղյակ, դպրոցական խակ երեխա, հորս թիկունքում, նրա շարժումներն ընդօրինակելով հնձում էի: Բայց իմ արածը հունձ չէր հորս աշխատանքի կողքին: Հունձ չէր ու հնձի տնազ էր: Իմ ծուռծուռ կալ լասերը, հորս լասերին շոյլալվելով՝ մի կերպ ձգվում էին նրանց կողքով, և կողքից նայելիս տգեղ պատկեր էր բացվում աչքի առաջ: Ու դրանից սիրտս սեղմվում, կուչ էր գալիս, և իմ արած հունձի համար ես հորիցս ամաչում էի... Բայց չգիտեի դեռ, որ իմ հասակի երեխայից հնձվոր կռել-կոփելը հանաք բան չէ, որ հմտություն սասծր հորաքրոջ ներ չի՝ գործն է իր հետ հմտություն բերում: Չգիտեի ու հենց դրա համար էլ նեղվում էի: Եվ հունձը դրանից ավելի էր դժվարանում:

— Կամաց,— նոր լաս մտնելուց առաջ հուշում էր հայրս,— հանգստացի, զոռ մի տուր, զոռով հունձ չի արվում, տղաս:

Բայց զոռ տայի-չտայի, միևնույն էր՝ խոտհունձն իմ ուժից վեր աշխատանք էր: Այդ տանջանքի մեջ, սակայն, թաքուն մի զգացում ինձ առաջ էր մղում, ես հպարտանում էի, որ իմ պապերի արդար գործը, հորս նման վարպետ հընձվորի կողքին, նաև ինձ էր վստահված: Ինքս իմ մեջ ոգևորվում էի, որ իմ արած գործը հորս դուր էր գալիս: Ու նաև՝ փոցխ քաշող մորս էր դուր գալիս, որ գլխաշորն աչքերին քաշած՝ խոտհարքն ի վեր աչքի պոչով նայում ու իր մեջ մայրաբար հրճվում էր: Հրճվում ու մտածում էր, որ, ահա, հոր թևի տակ, իրենց վաղվա ճերմակած օրերի համար թևութիկունք տղամարդ է աճում:

Բայց վաղվա օրվա պինդ տղամարդը իմ մեջ դեռ խաղաղ ննջում էր: Եվ ինչքան էլ լավ հնձեի, ինչքան էլ ջանայի ցույց տալ, որ հեշտ եմ հնձում, միևնույն է՝ գերանդու զոռից իմ ջլատվելը աչք էր ծակում: Գերանդին թափով վրա բերում ու տնքում էի, և գերանդու կտրված թափի հետ կարծես իմ բազկի ուժն էլ էր ցամաքում... «Պինդ կաց, տղա,— տղամարդու իմ տոհմի պատվասիրությամբ կշտամբեցի ինձ,— հնձվոր ես, ժապավենը հյուսքին աղջիկ չես, պինդ կաց»:

Կեսօրվա տապի մեջ, խոտհարքի արահետով, ձիավորված ու քնից նոր ելածի նման ալարկոտ գալիս էր Սեդրակ պապը: Եկավ, մեզ հավասարվեց, բարևեց և անցնելուց առաջ իմ կողմը նայելով, հորս ասաց.

— Ուղտի բեռը բարձել ես մի մասուր քուռակին՝ կդիմանա՞:

— Քուռակը սովորական քուռակ չի, Սեդրակ քեռի,— ժպտաց ու ինձ աչքով արեց հայրս: Հետո քրտինքը մաքրեց, ասաց.— Մեր ցեղի մանրը գերանդի ձեռքին է տղամարդ դարձել, ինչ սենմ, օրենքը ես չեմ հորինել, որ ես էլ վերացնեմ:

Ու մի պահ, հայացքը հեռուներին ու վերացած, հայրս կանգնել, նայում էր: Հետո գերանդին սրեց ու հնձելով իջավ: Լասը վերջացրեց, գերանդին ուսած ետ էր գալիս, և աչքն անընդհատ իմ կողմն էր, իմ արած գործը կողքանց զննեց, մտքում գնահատեց, հնձվորի իմ առաջին քայլերով բացեիբաց հիացավ ու

կարծես առաջին անգամ էր տեսնում, ասաց.

— Հնձվոր ես, տղա ջան, կարգին հնձվոր ես:

Ոգևորությունն իմ մեջ եռում էր, հորս գովասանքն ինձ թև էր տալիս, ես կարծես ինքնամոռացության էի տրվում, և հայրս դարձյալ կանխեց.

— Մի շտապիր,— ասաց,— գործը ըշտապել չի սիրում, մի շտապիր:

Նոր լա[illegible] մտնելուց առաջ, գերանդին սրելիս, հայրս հնձվորի հոգսից նոր մի-

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔՈՉՈՂԼՅԱՆԻ

այն մի պահ կտրվեց, մտքում Սեդրակ պապի ասածին անդրադարձավ ու վերից վար ձայն տվեց, ասաց.

— Լաստդ վերջացրու, թռի մի պաղ ջուր բեր՝ հաց ուտենք:

Աղբյուրն ինչքան էլ հեռու լինի, գերանդին ցած դրած մարդր ջրի ճամփին, այնուամենայնիվ, հանգստանում է: Ջրամանը ձեռքիս գնում էի շալակի բեռը ցած դրած մարդու թեթևությամբ: Գնում ու աչքի պոչով հորս էի նայում: Խոտհարքից դուրս եկա, թեքվեցի աղբյուրի կողմը, եղինջուտի արահետ մտնելուց առաջ ետ նայեցի. արևի տակ գերանդի քաշող հայրս իմ տեսադաշտից դեռ դուրս չէր եկել... Շրջվեցի, թափով կտրեցի-անցա եղինջուտը, քարակույտերի վրայով թռչկոտելով իջա կեչուտի բացատ, այնտեղից էլ մի շնչով հասա գոներով աղբյուր: Լվացվեցի, կուշտ ջուր խմեցի, ջրամանը դեմ արի աղբյուրի ակին ու նստեցի սոճու ստվերում: Շուրջբոլորս խաղաղ ու լուռ էր: Սարերի մաքուր հովը թույլ շնկշնկում, մանրիկ ալիքվում, խոտ ու ծաղկի մեջ խաղում էր: Թափանցիկ, ջինջ օդը լցված էր խոտ ու ծաղկի թանձր բույրով: Արևի բարակ մի շողափունջ ծառերի սաղարթներում երդիկ գտել, ճյուղերն ի վար լուսաճոպանի նման կախվել, ընկել էր աղբյուրի ակին: Ջուրը մամռոտ ժայռից բխում, առատ լույսի մեջ մանր ցոլանքով կայծկլտում, կորչում էր եղինջուտում: Ես մեջքս սոճու բնին դեմ արել, նայում էի լցված ամանին, ու, սոճիների փափուկ ստվերների տակ, ջրի ճլճլոցի հետ, իմ մեջ հյուսվում էր մի թախիծ, որը ոչ անուն ուներ, ոչ թաքնված տխրություն կար ներսը, ոչ էլ ուրախությունն էր մի բան... Վրաս լուսավոր թմբիր էր իջնում: Ականջներիս մեջ կարծես երաժշտության ծվեններ էին հյուսվում: Ու ես չէի ուզում վեր կենալ, դյութվածի նման տրվել էի ինքնամոռացության, և գույն ու հնչյունի խաղի մեջ աշխարհն ինձ թվում էր գունավոր մի երազ: Բայց այդ գեղեցկությունն իր մեջ ցնծություն չուներ, որովհետև ես հովին նստել, հանգստանում էի, իսկ իմ հերն ու մերը արևի տակ հիմա եփվում էին... «Վեր կաց, քեզ են սպասում»,— հուշեցի ինքս ինձ ու թափով ելա տեղիցս:

Մենավոր կաղնու ստվերում նստած՝ հայրս ու մայրս ինձ էին սպասում: «Քոռանամ ես,— ջրամանը ձեռքիցս վերցնելով խեղճացավ մայրս,— տղես արևի տակ խաշվել է»: Հայրս փափուկ ժպտում էր: Ես քրտինքս մաքրեցի, ջրամանը նորից ձեռքս առա, հորս ջուր տվի, ու հայրս առաջվա պես ժպտում էր, խմելիս անգամ կարծես ժպտում էր: Ես նորից մաքրեցի քրտինքս, նայեցի հորս աչքերին ու ինքս էլ չհասկացա, թե ինչու հանկարծ խղճացի նրան... «Դե կեր, մեղրդ կեր»,— ասաց մայրս, և, անորոշ հայացքս հեռուներին, ես սկսեցի դանդաղ ծամել:

Հետմիջօրեին ես այլևս հնձվոր չէի. եղանը ձեռքիս մորս էի օգնում: Հին հընձածը խնամքով հավաքեցինք, բլուրներ սարքեցինք, իսկ երեկոյան հայրս երկու մեծ կապ խոտ կապեց, որ ձիուն բարձենք: (Մեքենայի ճանապարհ չկար, ու խոտը սարից ձիով էինք իջեցնում): Տասընտասներկու փութ ծանրություն ձիուն բարձելու համար երեք-չորս տղամարդ էր պետք, և դրա համար էլ նեղն ընկած մեկը մտածել ու մի լավ հնար էր գտել (ու մնացածները ընդօրինակել էին նրան). խոտհարքի թեք լանջին (թեքություն միշտ էլ կգտնվի) ձիու բարձրությամբ գետինը կտրում՝ փոս էին սարքում, ձին իջեցնում էին փոսը և երկու կողմից կապոցները գլորում էին ձիու մեջքին: Այսինքն թե՝ հենակի դերը կատարում էր գետինը: Այսինքն թե՝ երեք-չորս մարդու գործը դառնում էր մի մարդու գործ: Եվ ամեն ինչ այնքան հեշտ էր արվում, որ քառորդ ժամվա ընթացքում մեր ձին արդեն բարձած պատրաստ էր: Գերանդի, փոցխ ու եղան պահեցինք և իջանք խոտհարքն ի վար:

Խոտհարքի փափուկ արահետը խոտ ու ծաղկից աննկատ զատվեց, անտառ մտավ, գլուխը կախ գնաց թփերի միջով և ապա, ոլորան-ոլորան կոտրատվելով, իջավ բլրալանջն ի վար: Եղանակը վատացավ: Ամպերը խտացել, ծանր ու սև կախվել էին մեր գլխավերևում, և դեռ անձրև չեկած՝ եկավ անձրևի պաղ շունչը: Ամպերի խոր ծալքերում ամպրոպը պայթում էր հիվանդ ծերունու հազի նման խուլ ու հեռավոր, և օրը գնալով սևանում՝ մեր աչքի առաջ մթնում էր: Ոլորանների վրա էինք, երբ անձրևը թափվեց: Խը՜շշշ... Անձրևամաղվածքը սոճիների բարձր կատարներին շերտ-շերտ ճոճվում ու թափվում, խտանում էր ծառերի սաղարթներում: Արահետը դարձավ լպրծուն, վայրէջքը դժվարացավ. քայլ գցելիս գետինը փախչում էր ոտքի տա-

կից: Բեռը խփմեց, ծանրացավ ձիու մեջքին... Ու ես տագնապով մտածեցի. բա որ հանկարծ ձին... Կանխազգացո՞ւմ էր, թե՞ անհագնացող տագնապի օրինաչափ ելք՝ վերջին ոլորանի վրա ձին գայթեց, կողքի կապոցով բախվեց սոճու ծառին, կողքի-կողքի գնաց, ոտքերը կավացեխի վրա փախան աջ ու ձախ, և ձին կորցրեց հավասարակշռությունը. ընկավ, անհույս թպրտաց ու մնաց ընկած տեղում:

Մի պահ շփոթ ու լուռ կանգնել, նայում էինք: Մտածում էի՝ ի՞նչ պետք է անենք: Անցնողն անցել էր, ու օրվա այդ ժամին դեմից եկող չկար, օգնող տղամարդու պինդ բազուկ չկար, որ կապերը քանդեինք, նորից բարձեինք, մեր հույսը մենք էինք, մեր հույսր հորս պինդ ձեռքերն էին: Գործի անցանք: Հայրս մի կապոցին, ես ու մայրս՝ մյուսին կպած բարձրացնում էինք: «Հա՛, դուրբան»,— տընքոցի միջից ձիուն ոգևորում էր հայրս: Բայց ձիու աչքերը հանգած ու տխուր էին, ձիու մեջ ուժ չկար, գլուխը կողքի թեքել, հորս խնդրանքին անհաղորդ, խուլ տնքում էր: Եվ մի պահ հայրս կապոցից կտրվել, հուսահատ կանգնել էր: Կռացավ, ձիու գլուխը շոյեց, ինչպես տնքացող, հիվանդ երեխայի գլուխն են շոյում, ապա շտկվեց և դարձյալ հուսահատ ու մոլոր կանգնել նայում էր: Հուսահատության անորոշ պահը, սակայն, երկար չձգվեց՝ հայրս քրտինքը, թե անձրևը դեմքից մաքրեց, մեզ գլխի շարժումով հրահանգ տվեց ու նորից կպավ կապոցին: «Հա՜ա...»,— խոսքը դեռ բերանում՝ կապոցները ցնցվեցին, ձին թափ առավ, թռավ, դեռ լրիվ չելած՝ դարձյալ գայթեց անհաջող, բայց մենք արդեն մեջքներս կապոցների տակ սյուն էինք արել. ձին պահեց հավասարակշռությունը, սրունքների ջլերը պրկվեցին ծանրության տակ, մեջքր դարձյալ կեռվեց, ու մենք դուրս եկանք կապոցների տակից: Ջնեցինք, տեսանք, կապերը թուլացել են, բեռը ծռվել, կախ է ընկել, բայց կապերը պընդացնելու ժամանակը չէր. անտառից դուրս եկանք:

Մեր դիմաց ազատ, ընդարձակ տարածություն էր հիմա: Անտառն իր դժվար վայրէջքով մեր թիկունքում էր արդեն, մեր դեմ ցորենի հնձած արտերն էին, և թոն-թնջուկ պղտորությանը ձուլված՝ մենք ուրվականների էինք նման... Անձրևի խշշոցի հետ ընդհատ-ընդհատ լսվում էր ձիու խուլ տնքոցը, սրունքների ջլերը պրկվել, կարծես թե կտրատվելու էին, և ձին գնում էր մի տեսակ մաքառելով: Սանձը ձեռքին՝ ձիու առջևից գնում էր հայրս. ուսերը փլվել էին ասես, ձեռքերը կախ ընկած ճոճվում էին անբնականորեն ու ձիու առջևից գնացողը կարծես ինքը չէր, ինքը կարծես խոտհարքի կանաչ լանջին էր մնացել... Ձեռքերը՝ կախ ընկած կապոցին, ձիու կողքով քայլում էր մայրս. շորերը թրջվել, կպել էին մարմնին, գլխաշորի տակից մազերը դուրս թափվել, անկանոն շաղ էին եկել դեմքին, վզին, ուսերին, ռետինե ոտնամանների մեջ ջուր էր լցվել, և ոտքերը ոտնամանների մեջ գնում-գալիս ճըստճըստում էին: Ես գնում էի վերջից և գոհ էի, որ անձրևը չէր դադարում. ես լաց էի լինում...

Այդպես իրար ետևից լուռ գնում էինք: «Հա՛, բալիկ ջան, քիչ մնաց, հա՛,— իրեն և ձիուն սիրտ տվեց հայրս,— մի քիչ էլ դիմացի՝ հասնում ենք»:

Ցորենի հնձած արտերը ետևում մնացին, ձորակն անցանք, կիրճի նեղլիկ արահետի վրա մի պահ տարուբերվեցինք ու հետո, Մելիքի տանձենու մոտ, փափուկ ճանապարհը ծունկ տվեց, կախվեց դեպի գյուղ:

Երբ գյուղ մտանք, անձրևն արդեն դադարել էր: Ամպերը ետ գնացել, արևի դեմը բացել էին: Մայրամուտի մերկ արևը խոնավ ու լուռ ժպտում էր, դաշտ ու ձորի վրա կախվել, թրթռում էր խաղաղ մի լռություն, և լուսավոր թախիծր տարածվել, թափանցիկ քողի նման բռնել էր երկրի երեսը... Մենք քանդել էինք ձիու կապերը: Մայրամուտի արևի տակ ձիու թաց մեջքը փայլում էր: Ձին հոգնած ու տխուր էր, պղտոր, մշուշապատ աչքերը սառել էին մի կետի, սրունքների պրկված ջլերն աստիճանաբար թուլանում, պարպվում էին տևական լարվածությունից, և ձին իրենից հեռացել՝ ուրիշ աշխարհներում էր ասես: Հայրս շեմափայտին նըստել, մեջքը դեմ էր արել դռան շրջանակին ու, հայացքը ձիուն, հոգոց հանելու նման խորը շնչում էր: Ու մտքերն իր հետ չէին, ինքն իրենից վերացած էր: Թաց շորերը դեռ հագին էին, թաց գլխարկը դեռ գլխին էր, հոգնածության ու թաց շորերի սառնության մեջ կուչուձիգ եկած՝ հայրս մտքերից մի պահ կտրվեց, վիզը թեքեց ու միջանցքն ի ներս ձայն տվեց մորս.

— Սիմա, բեր մի տաք մինդար գցի ձիու մեջքին, խեղճը հալից ընկավ:

# Եթե բարեկիրթ ես...

Երկրագնդի հինգ ու կես միլիարդից ավելի բնակիչներն իրար հետ առնչվում և բացատրվում են շուրջ 2977 հիմնական լեզուներով, որոնցից յուրաքանչյուրի բառապաշարը հաճախ հասնում է հարյուր հազարների: Բառերի այդ աներևակայելի քանակը հնարավորություն է տալիս մարդկանց արտահայտելու իրենց զգացմունքներն ու գիտելիքները, պատմելու անցյալի ու երազելու գալիքի մասին: Անշուշտ բոլոր մարդկանց բառապաշարները նույնը չեն: Տարբեր մասնագիտության ու տարբեր զբաղմունքի մարդիկ ունեն իրենց բնորոշ բառապաշարը, արտահայտվելու ոճը: Սակայն բառային հսկայական ու անսպառ զինանոցում գոյություն ունեն բառեր, առանց որոնց բարեկիրթ մարդը չի կարող հարաբերության մեջ մտնել իր նմանների հետ: Խոսքը քաղաքավարական արտահայտություններին է վերաբերվում, որոնցով շատ հարուստ է մեր լեզուն: Այդպիսիք են՝ բարի լույս, բարի օր, բարի երեկո, բարի գիշեր, ողջույն ու ցտեսություն, հաճեցեք և շնորհակալություն, մեղավոր եմ ու ներողություն և այլն, և այլն: Այս բառերի տեղին և ժամանակին օգտագործումը շատ դիպուկ է բնութագրում խոսողին, նպաստում մարդկանց փոխհարաբերությանն ու փոխըմբռնմանը: Վախկոտ, կամակոր մարդն ընդունակ չէ խոստովանելու իր սխալը և ասելու.

— Մեղավոր եմ, ներեցեք...



Երես առած ինքնավստահին թվում է, թե բոլորս պարտք ենք իրեն, ու նա սովորաբար չի խնդրում, այլ պահանջում է, և նրան խորթ են այս խոսքերը.

— Բարի եղեք, խնդրեմ...



Երբեմն տրանսպորտում ունկնդրում և ականատես ես լինում, թե ինչպես որևէ մեկն իր կտրոնը դեմ է անում անծանոթի դեմքին և պահանջում.

— Դակի...

Մարդը տհաճությամբ կատարում է հրամանը, մտովի հիշելով գռեհիկի դաստիարակներին և ծնողներին, որոնք իրենց սանի մեջ

չեն պատվաստել տարրական քաղաքավարություն:

Մի այլ դեպքում տեսնում ես, թե ինչպես խնդրում են.

— Բարի եղեք դակելու կտրոնս...

Դիմացինը հաճույքով է կատարում խընդրանքը և ժպտադեմ վերադարձնում կտրոնը՝ ասելով.

— Համեցեք.



Նկարները՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Շնորհակալություն,— լսում է նա, և երկուսն էլ գոհունակությամբ շարունակում են ճանապարհը:

Գերմանացիների մոտ տեսել եմ, թե ինչպես մարդիկ հրդեհի ժամանակ ջրով լի դույլը փոխանցելով մեկմեկու, յուրաքանչյուր անգամ մեկնողը ասում էր «համեցեք» և ընդունողը պատասխանում էր «շնորհակալություն»: Այդ նույնիսկ զավեշտալի կարող է թվալ նման մի ողբերգական պահի, բայց դա մարդկանց արյան մեջ էր մտած:

Անդուր է նաև, երբ քաղաքավարության խոսքերը շռայլվում են անտեղի կամ չափից ավելի, ստանալով ստորաքարշության ու երկերեսանիության երանգ: Մեր խոսքը իրենց արժանապատվությունը գիտակցող բարեկիրթ մարդկանց մասին է, որոնք օգտագործում են բառն իբրև մեկը մյուսի սիրտն իր դեմ բացելու կախարդական բանալի: Հիրավի, ոչինչ այնքան էժան չի նստում և այնքան թանկ չի գնահատվում, որքան քաղաքավարությունը:

Ուրեմն, եկեք տեղին և ավելի հաճախ օգտվենք այդ բառերից:

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ,
Կ.նսաբանական գիտությունների թեկնածու

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Ամերիկացի բուսաբան Դոնալդ Յուջենտը, ուսումնասիրելով կարտոֆիլի պահեստների մնացորդները, որոնք հայտնաբերվել էին պերուական հնդկացիների հնագույն բնակատեղիների պեղումներից, հավաստիացնում է, որ 12 հազար տարի առաջ Պերուի բնակիչները արդեն մշակում էին այդ կուլտուրան: Եթե գիտնականի եզրակացությունը հաստատվի, նշանակում է պտուղներ հավաքելուց ակտիվ հողագործության անցնելը Նոր երկրում կատարվել է մոտավորապես նույն ժամանակ, ինչ որ Եվրոպայում:

«Նայելով» մարդու աչքերի մեջ, մեքենան մտածում է մեկ ու կես վայրկյան, հետո հայտարարում. «Մտեք, խնդրեմ» կամ դուռն այդպես էլ մնում է փակ: Այսպիսին է նոր պահպանական սիստեմը, որ մշակել են ամերիկացի մասնագետները:

● Սկզբունքը պարզ է: Հաշվիչ մեքենան քննության է ենթարկում աչքի եղջերաթաղանթի նկարը և համեմատում այն իր հիշողության մեջ պահվող պատկերների հետ: Եթե օրինակը համընկնում է, ապա դուռը բացվում է: Այս սիստեմը, բնականաբար, շատ թանկ է և նախատեսված է ամենից առաջ խիստ հսկողության ենթարկվող հիմնարկների համար:

Եղջերաթաղանթի պատկերը նույնպես անհատական է, ինչպես և մատնահետքերը: Այնպես որ էլեկտրոնային պահակը կարող է սխալվել միայն միլիոնից մեկ դեպքում:







# ԺԱՄԱՆՑ

1. Սովետական կինոռեժիսոր, որի «Գընա և նայիր» կինոնկարը արժանացավ վերջերս կայացած մոսկովյան կինոփառատոնի գլխավոր մրցանակին:
2. Հայ անվանի դերասան (Կակուլի՝ «Պեպո», Մակիչ՝ «Զանգեզուր»):
3. Հայկական երաժշտական կինոնկար:
4. Աշխարհահռչակ կինոկատակերգու:
5. Թատրոնի և կինոյի հայ դերասանուհի (Շուշան—Պեպո):
6. Սովետական կինովավերագրող («Մեծ հայրենականը»):
7. Ֆրանսիացի կինոկատակերգու («Ժանդարմն ամուսնանում է»):
8. Հայկական գեղարվեստական կինոնկար (ռեժ. Հ. Մալյան):
9. Ամերիկյան կինոռեժիսոր («Խելակորույս, խելակորույս, խելակորույս աշխարհ»):
10. «Վազք» կինոնկարի բեմադրող ռեժիսորներից:
11. Իտալացի նշանավոր կինոռեժիսոր, նեոռեալիզմի ներկայացուցիչ:
12. Սովետական կինոդերասան («Միմինո», «Լուցկի բերելու»):




ԳԱՂՏՆԱԳԻՐ— Խաչբառի հարցերին ճիշտ պատասխանելուց հետո պետք է լրացնել գծագրի կենտրոնում նշված կոտորակները: Համարիչը ցույց է տալիս խաչբառի հարցի համարը, իսկ հայտարարը՝ համապատասխան տառը:

Ճիշտ լրացնելուց հետո կկարդաք կինոն հայտնագործող եղբայրների ազգանունը:

Կազմեց ՎԱՆԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ





## «ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. «Անահիտ», 2. Տերյան, 3. Նալբանդյան, 4. Նեկրասով, 5. Վեպ, 6. Պանին, 7. Նովել, 8. Լեսսինգ, 9. Գյոթե, 10. Երուխան, 11. «Նամուս», 12. Սարոյան, 13. Նուարդ, 14. Դեմիրճյան, 15. Նիլովնա, 16. Արմեն:

Կոտորակներում կարդացվում է՝ Հակոբ Պարոնյան:





Վրիպակներ.

«Պիոներ» 5-ում՝ էջ 19-ի 2-րդ սյունի 14-րդ տողը կարդալ՝ նամա արմինիյա, իսկ տուրարտբեյա-, «Պիոներ» 5-ում 9-րդ էջի 1-ին սյունի 16-րդ տողում կարդալ բնձուղտ:

## ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ



ԴԱՎԻԹ ՍԻԿԵՅՐՈՍ (1898—1974 թթ.) «ՆՈՐ ԴԵՄՈԿՐԱՏԻԱ», 1945 թ.
(ՈՐՄՆԱՆԿԱՐ ՄԵԽԻԿՈՅԻ ԳԵՂԱՐՎԵՍՏԻ ՊԱԼԱՏՈՒՄ)



Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅ-ՎԱԶՅԱՆ Վ.։

**ԻՆԴԵՔՍ՝ 77806**

**ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**